# ՀՆՈՑ ԵՒ ՆՈՐՈՑ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## *ՎԱՍՆ ԴԱՒԹԻ ԵՒ ՄՈՎՍԷՍԻ*

## ԽՈՐԵՆԱՑՒՈՑ

ԹՈՒՂԹ ԴԻՈՆԷՍԻՈՍԻ
ՕՐԻՆԱԿՔ ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆԱՑ
ԴԱՄԲԱՐԱՆ Ս. ՍՈՒՔԻԱՍԵԱՆՑ
ՁԵՌԱԳԻՐ ՄԱՏԵԱՆՔ

ՔԷՇ[illegible] ՊՕՂԷ

ՀՐԱՏԱՐԱԿԵԱՑ
ԳԱՐԵԳԻՆ Վ. ՍՐՈՒԱՆՁՏԵԱՆՑ

Կ. ՊՕԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Ե. Մ. ՏՆՏԵՍԵԱՆ
ԽԱՍ ՉԷՖԷՆՏԻ ԽԱՆ ԹԻՒ 11

1874

# ԱՌ ՎԵՐԾԱՆՈՂՍ

Վանորայք և եկեղեցիք Հայաստան աշխարհին մերոյ են մէն մի գանձարանք պահարանք ազգային հնութեանց, բեր աւել ևս և ազգային գոյութեանց։ Այսոքիկ են վայրք, յորս մենացեալ ամրացեալ ապաստան եղեն ոգիք սրբասէրք և տքնասէրք․ անդ անօր վաստակէին միտք և մատունք յօրինողաց և օրինակողաց գրենեաց թարգմանաբար և հեղինակաբար․ ծաղկարարք, կազմարարք, երգասացք, շարականք, ճառողք, վարդապետողք, առաջնորդողք, մեկնիչք, պատմիչք, տոմա-

րագէտք. սուրբ և սոյնպիսիք առ հասարակ վանականք են և եկեղեցականք 'ի հինս:

Եթէ լինէր ոք ըղձացող և սիրող այսց երկոց, թողոյր լքանէր զվիճակ իւր, մերկանայր զոր ունէրն, թէեւ թագաւոր կամ սպարապետ, նախարար կամ ռամանիկ; ըզծիրանին, զմականն, զգաւառըն և զտոհմն. գնայր միանէր 'ի գաւիթ տաճարին, և փոխէր յանուն և 'ի ձեւ տերացու, կրօնաւոր, և սկիզբն առնէր ընթեռնլոյ և գրելոյ:

Հայեցեալ յանցեալ աւուրըս պատմական կենաց մերս Հայաստանեայց, ոչինչ ապաքէն միայն յայնքան կործանմանէ, յասպատակութեանց,

գերեվարութեանց , սովոց , պրածութեանց պուրծ , որք յարտաքնոցն հասանէին և 'ի ներքնոցն ուրացելոց բուսանէին՝ ջնջել զայս ազգ յերկրէ , բառնալ զանուն Հայաստանեայց 'ի ներքոյ արեւոյ ։ Տարաւ Պարսիկն զիւր աւար-բազմածոխ . եհեղ թաթարն զարիւնս գետօրէն . 'ի մխիր նստեցոյց զՇահնշահս Հայոց, զարեգականման գահերն Անւոյ և զքաղաքս պայծառս համօրէն՝ Բիւզանդեանն Յոյն. մանրեաց փշրեաց զմնացորդ ոսկերոտին՝ Արաբն անագորոյն . և զծիրանն ողկուզաց ճմլեաց մղեաց շահն Հըռովմայ ։

Ցայսօր իսկ աչօք մերովք

տեսանեմք, զի բաւական չը համարեալ զանձինս տարագիրս ողորմելի Հայոց, և 'ի բաժինս բաժինս հերձելոց, նկրտին, ջանան և 'ի լեզուէ հանել, յանուանէ հայութեան թափել, և օտարացուցանել իսպառ զհեռացեալսն արդէն 'ի հողոյ հայրենեաց, և 'ի մօրէն իւրեանց կաթանէ ստեանց: Եւ ո՞յք ոմանք իցեն սոքա: Սոքա են որ 'ի վերին երեսս պաշտապան, կարեկից, յուսատուցուցանեն զանձինս, քրիստոնեայք, այլ կեղծաւորեալք, կամին կլանել զմեզ: Որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ:

Իմա՛ զինչ ասեմ:

Առ Նախնեօքն մերովք՝ վանորայք և տաճարք իբրեւ ամուրք անընկճելիք ախոյեան եղեն ընդդէմ հրոսակաց աւերածուաց. ոչ ոք կարէ ուրանալ, զի եղէգն և փետուք, բարբառ և քարոզ պաշտօնէից Աստուծոյ և սպասաւորաց բանին՝ մեծապէս զօրացին բեկել, փշրել զզօրութիւն և զխորամանկութիւն թշնամեոյն. և յորժամ տեսին զի անկանէին մարտիրոսաբար բազմութիւնք որդւոց եկեղեցւոյ, և կամ պարտեալ վարեալ լինէին 'ի կապանս և 'ի տար աշխարհս, ելանէին, յառաջէին, առաջնորդէին այնոցիկ, անկանելով նախ քան զնոսա. և դերեալք

վարեալք զառաջոյ ծոցա, իբ-
րեւ զամոլս 'ի լոյծ հարօրայ:

Ոգելի և զեղջելի է ար-
դարեւ պատմութիւնն որ յա-
ղագս վանականացն և եկե-
ղեցականաց մերոց այսպի-
սեաց:

Ընդէ՞ր ցրուեցան Հայկայ
որդիք, ուր և ցրուեցան.
շատք եւս ընկղմեալք կորու-
սեալք եղեն 'ի ծոցս արեւե-
լից և հարաւոյ, յափունս
արեւմտից և հիւսիսոյ. —
առ 'ի փրկել զգլուխս իւր-
եանց: Զի՞նչ ինչ ուրեմն ար-
դեօք կրեցին որք կեցինն և
շարունակեցին հայաբար ըզ
կեանս 'ի հայրենիս, որոց ա-
մենեցուն զօր և զօրութիւն
էր մի միայն սէր սուրբ առ-

ճարայ և երկնանման վայ-
րաց գմբէթարդ վանորէից,
օծելոց խորանաց. ուր դան-
մահ սրատարագն մատուցա-
նէին. ուր այնքան աղօթկեր
և մատենագիրք արք և հարք
Մնայրին. ուր տան և տոհմին
ուրեանց յիշատակագիրք 'ի
խաչքարինս և 'ի կողս սուրբ
աւետարանաց, յայսմաւու-
րաց, ճառընտրաց և այլոց
սուրբ և պիտանի գրեանց
թողուին: ինձ թուի թէ այ-
տոքիկ կերտուածք, տաշ-
ուածք և գրուածք մեծա-
պէս առիթ եղեն պահելոյ
զմնացեալ Հայս 'ի Հայս, որ-
պէս և ականջօք իմովք լուայ
երբեմն 'ի բերանոյ ուրուք
բնակելոյ յԱփկազբիւր գիւղն

Մշոյ՝ Խօրդօ անուն Հայոյ, որ ոչ զայբ գիտէր և ոչ զբեն երբէք ճանաչէր, այլ յաւուր միում այն ինչ Հայք ոմանք նեղեալք 'ի Հարստահարչաց՝ խորհէին բառնալ զտունս և գնալ 'ի Պարս կամ 'ի Ռուսս, յայնժամ Խօրդօն՝ որ մի էր 'ի տառապելոցն, բացեալ զբերանն և յեռանդէ հոգւոյն այնքան լիմն ազդու յոգւոց հանեալ ասէր ցայնոսիկ.

«Երթա՛նք, երթա՛նք, բա՛ խմա՞լ թողկենք զմեր եղեկեցին, զմեր պապերու գերեզմըններ, զմեր վանքեր, սուրբ Ովաննէս, սուրբ Կարապետ, Առաքեալք (Առաքելոց վանքըն), էս զըմէն սըրբեր, խաչեր, խաչքարեր, էս զըմէն

կարգաւորներ, մեր ժամ ու պատարագներ . . . կ՚եղնի՞ որ էսոնք թորկենք փրդերուն ու երթանք . . . »: Եւ այլն »:

Այս սէր ազգի մերոյ՝ տեսանի նաեւ յայսքան արձանագիրս, ՚ի կոնդակս, ՚ի քանդակս, և ՚ի յիշատակարանս ձեռագրաց մատենից, յորս նշանակին գիւղորայք, այգիք, անդաստանք, դրամք, տունք, ուանք, և պէս պէս ստացուածք տըւեալք մշտնջենական նուէր այսմ վանուց, այնմ ուխտին կամ եկեղեցւոյ, և անիծիւք կնքեալ զբանն ՚ի գլուխս հանողացն և յափշտակողացն զայնոսիկ:

Տեսանեմ ես աւասիկ, զի հայրենիք հայոցս ամփոփեալ են 'ի վանօրայս և յեկեղեցիս մեր., քան խորհրդական և քան նիւթական նշանակութեան միանգամայն. քանզի, եթէ գոն մեր այսօր սեպհականութիւնք ինչ ազգային կամ հայրենական, այն միայն սրբավայրքն են մեր, զորս ազատ են թողեալ տիրողք և խնամող պետութիւնք 'ի վերայ մեր:

Եւ քանզի այս այսպէս է, շրջեալ զբանն՝ ասեմ. ուրեմն եկեղեցին է հայրենիք մեր. 'ի նմա գտանեմք զլեզուն և զբարբառ հարանց մերոց, 'ի քարտէզս և 'ի քարինս նորա դրոշմեալ անուանք ; ժամա-

Նաւկք, անցք, յիշատակք ան-
ձանց բարեպաշտից և հայ-
րենաշինից, անդ արքայք և
թագուհիք, նախարարք և
գլխոյք, տեարք և տիկնայք,
հայրապետք և վարդապետք,
քահանայք և կղերիկոսք, և
ամենայն որք անուանիք.

Հոգեւոց վանքն յԱնձե-
ւացիս՝ ցուցանէ մեզ զդորան
գերեզմանն առիւծուն Տրդա-
տայ. եկեղեցին Աշտիշատայ
՚ի Մուշ՝ զերանելլի Պարթեւեն
Սահակ. խորանն Աշտարակայ
յԱրարատ՝ զցանկալին Մաշ-
տոց. վանքն Ս. Ղազարու կամ
Առաքելոց ՚ի Մուշ՝ զմեծն Խո-
րենացին, զանյաղթն զԴաւ-
իթ, զՅօհաննն և զՂազար
Թարգմանիչսն. վանքն Ղա-

րագայ 'ի վասպուրական՝ զԱրծրունին Սենեքերիմ և զԹագուհին խոշաշ տիկին, և զԳետորոս Հայրապետն գե-տադարձ: վանքն Ոստանայ 'ի Ռշտունիս՝ զպատուական պատմիչն Եղիշէ: վանքն Նա-րեկայ՝ զՆարեկացին: վանքն Ամարասու 'ի Սիւնիս՝ զԹոռն Ս. Լուսաւորչին զՍ. Գրիգո-րիս: վանքն կոփայ՝ 'ի յԱ-պահունիս մօտ 'ի Մուշ՝ զեր-ջանիկն Գանիէլ, որ 'ի Թո-ռանց Ս. Լուսաւորչին համա-րի: վանքն Բասեննու կամ Հասանգալէի՝ զՄագիստրոսն Գրիգոր 'ի հսկայակերտ դամ-բարանի: վանքն Խէկայ (Հայ-կայ) 'ի Հայոց ձոր՝ զխոստո-վանողն Աբրահամ՝ զԱլշատակ-

եալն և զերանեալն յԵղիշէենն, վանքն Ս. Կարապետին Տարօնոյ՝ զՄուշեղն, զԳայլ վահան, ընդ բազմաց ականաւորաց։ Նկեղեցին Իշխանագոմ գեղջն առ բերանս Հայոց ձորոյ՝ զՎարդ պատրիկն բարեպաշտ։ Եւ զի՞ մի մի թուեցեմ. թէպէտ ցանկալի, այլ ոչ կամիմ հարեւանցի անցանել, և ոչ կարող լցեմ զամենայն յիշատակել, որք են 'ի Կամախս, 'ի Թորդան, յԱյրարատ, շուրջ զԱնւոյն, և որ 'ի հիւսիսայինն խիտ և հոյակապ տաճարս, և 'ի Կիլիկիա՝ պերճակառոյց և բազմաթիւ վանորայս լցեն նշանք և գերեզմանք հարցն մերոց ընդ գերեզմանօն և բազում

ձեռագիրք մագաղաթեայք, խաչքարեայ մահարձանք, դրանդիք փորագրեալք, արծաթաչէն խաչք, սուրբ մասունք սրբոց ոսկեպատեալ և արծաթակապ, յորս յիշատակ գրեալ կան նուիրատուաց անուանք. և նոյն իսկ սուրբ մասունքն են անգին և անգիւտ, որպէս է տեսանել զմի մասն սուրբ վարդանայ Մամիկոնէի 'ի սուրբ վարդան եկեղեցին վանայ. մասն մի ևս 'ի սուրբ Յօհաննու վանսն Մշոյ, ուր է նաև շիշ նարդեանն աղնուի իւղոյ մեծագնի, զոր եհեղ Մարիամ 'ի վերայ աստուածային գլխոյն Յիսուսի Տեառն մերոյ. անդ է և մասն

Ս. Ղեւոնդայ. Այլ՛ Վանքն Ոստանայ՝ ուր շիրիմ սրբոյն Եղիշէին է, ունի զայն խաչն պատուական և պաշտելին, զոր Ս. Սահակն Պարթեւ եդ թոռին իւրոյ Ս. Վարդանայ. և յորժամ Վարդանն սուրբ ինքնին շինեցաւ խաչ 'ի սէր խաչելոյն փրկչին 'ի դաշտին Արտազեան, հանեալ 'ի պարանոցէն զպապկենական անգին նուէրն զայն; առ ընկալաւ Եղիշէն պրկեալ 'ի կուրծս իւր խաչանուէր. այն և եթ էր որ մխիթարէր ըզ հոգին սդաւոր ընդ կորուստ այնքան մեծի և անզուգական առն առաքինւոյ, և աշխարհին հայրենւոյ. և անցեալ բարձրացեալ 'ի լերինս

Մ'օկաց՝ · այնուհետեւ զՓօղո-սին ունէր զհետ՝ Աշխարհ նմա 'ի խաչ ելեալ, և նա աշխարհի :

Երանի՛ թէ լինէր ոք, կամ, կամէին վանական և եկեղեցական հարք մեր իւ-րաքանչիւր զպատմութիւն և զստորագրութիւն իւրաքան-չիւր վանորէից և եկեղեցեաց գրել և հրատարակել, հան-դերձ ամենայն նշանօք, յի-շատակօք, շինուածովք, սահ-մանօք վայրաց, և սպասուք սուրբ տեղանոյն, և թուով սուրբ Մասանց, և այլն, ման-րամասնօրէն : Եւ 'ի միտ ու-նիմ, եթէ, Տէր յաջողեսցէ, զպատմութիւն Մշոյ Ս. կա-րապետի վանուցն իբր հա-

բեւր ամաց՝ գրել և տալ 'ի տիպ. ընդ որ ունիմ կցորդել զնոյն վանուցն Սրբոց Մասունքն մի առ մի, և ըզ սրբոյ Յօհաննու վանուցն՝ սուրբ մասունս, զորոց ցանկն ունիմ առ իս բովանդակ:

Յայսցանէ ամենայնէ, որք ինձ կարևորն թուին, և զուշ իմ գրաւեալ ունին, չկամիմ՝ մանաւանդ թէ չկարեմ լիովինս բացատրել. զայսքան և եթ գրեմ առ 'ի յուշ ածել եկեղեցյասիրաց և Հայրենասիրաց, զի ինքեանք եւս ուր և գտանիցին ձեռն արկանիցեն վաստակել յայսպիսի վաստակս պիտանիս և գիտելիս ամենայնի, որք իցեն արդարեւ Հայք: Ամե-

Նայն ոք կարէ խելամտել թէ զի՞նչ ի՞նչ և ո՞րքան անքան են յիշատակք այսպիսիք 'ի Մայր Աթոռն մեր սուրբ 'ի Վաղարշապատ, և յԱթոռն սուրբ Երուսաղէմի. Նաև 'ի Սիս, յԱղթամար, և յայլ և այլ նշանաւոր եւս և յաննշան կարծեցեալ յեկեղեցիս և վանորայս, մինչեւ տեսանին իսկ բազումք և 'ի տունս տունս երիցանց և աշխարհականաց :

Քան զանթիւքայ դրամս և քարինս առաւել անթիքայք են այսպիսեաց հաւաքումն և տարածումն :

Իցէ՛ զի ընկերանային բանասէրք ազգայինք կարողագոյնք, որոց գործ և նպա-

տակ լինէր հաւաքել և տը-
պագրել տալ զանազան մնա-
ցեալ մատենագիրս. մեզա-
նմանք միայնակ զի՞նչ մար-
թեն առնել. այն ինչ տպա-
գրիչք թանգ և կանխիկս
պահանջեն. և տպեցեալք
անվաճառելի մնացեալ ցե-
ցակեր լինին և մաշին:

Դարձուցեալ զբանս և
մասնաւորեալ յաղագս մա-
տենագրաց գրենեաց մերոց
ազգային, զարմանայի եր-
բեմն ես ինքնին, և զարմա-
նամ ցայժմ վասն այնոցիկ,
որք աւաղեն և հառաչեն 'ի
խորոց, յորժամ լսեն և ա-
սեն թէ՝ Լէնգ—Թիմուրն ըղ
մեր Հայոց գրեանս ժողով-
եալ և գերի վարեալ տար-

եալ Թաղեալ ունի 'ի միջի-
նաբերդին Սմբղանդու : Ցի-
շատակ արդարեւ կարի մըր-
մըռալի :

Այլ սակայն աւաղել ար-
ժան է առաւել վասն այնո-
ցիկ գրենեաց, որք 'ի հող
Հայաստանին Թաղեալ փըտ-
եալ իցեն · և որք 'ի ձեռս
հողագլուխ անձանց անցեալ,
անխնամս պահելով, 'ի ներ-
քոյ կաԹիլքի տանեաց յանձ-
րեւաց, կամ 'ի փոշիս և 'ի
մոխիրս Թողեալ շաղախեալ,
փճացեալ իցեն :

Ի յետին ժամանակս մա-
նաւանդ, յորժամ 'ի վանո-
րայս ընտիր համարէին զայն
ոք, որ գիտէր քաջ եղնա-
վարուԹիւնս, որ ոք քաջ

լինէր փայտիւ հաւաքել զիւղ, զպանիր, զմստաղ, զհոգեբաժին և զպտղի 'ի թէմական ժողովրդոցն. որ ոք լինէր ճարտար 'ի կռուել, 'ի քսուել, 'ի խաբել, 'ի հայհոյել և յաղաղակել. այնպիսին յառաջանայր 'ի կարգ բարձր աստիճանի եկեղեցականութեան, և պատիւ և շնորհս ընկալնոյր յաչս մեծաւորին և ժողովրդեան. ագանէր, հեծանէր, սպառազինէր, հարկանէր, այսքան էր արժանաւորութիւն նորին. և գիտել զՀայր մեր, զՀոգւոյ և զՊահպանիչ՝ բաւական էր։ Յորժամ արտաքս չկօթակ լինէին գրիչն և կազամարն, և որ զայնոսիկ 'ի

գործ ածէրն , սակաւք և յոյժ սակաւք էին ընթեր-ցողք և գրագիրք ։ Այս այն աւուրք են , որպէս ասեն , մատով ցուցանէին զնա և զսպիտակ ճանաչողն , որք զայրն տեսանէին և զքենն 'ի գիւան քարշէին ։

Ընդ Նուազիլ գրասիրաց , մահ և քօլէրայն տիրեաց գրեանց , և զբազումս 'ի Նո-ցանէ մեռոյց ։ Դեռ քանի՞ ամք են զի լսեմք զանուն գրատան կամ Թանգարանի 'ի սուրբ Էջմիածին և 'ի սուրբ Երուսաղէմ · այսու ամենայ-նիւ հանին տպագրութեամբ 'ի լոյս 'ի գրատանց յայնցանէ ինչ ինչ, որպէս և 'ի գրոց Տա-թեւու վանիցն՝ Պատմութիւն

Սիւնեաց Օրբէլեան 'ի շարս
Հայ պատմագրաց էած 'ի
լոյս լուսահոգի Կարապետ
վարդապետ Շահնազարեանց։
Եւ քանզի եկեղեցիք և վա-
նորայք են գլխաւորապէս
պահարանք գրոց, — ես չը
կամիմ յիշել զորս ունին տե-
ղաբնակքն թագուցեալ 'ի
տունս տունս, առաւել եւս
գաղթեալքն աստ և անդ,
որք առեալ ունին ընդ ինք-
եանս զսեպհական կամ զ'ի
ձեռս անկեալ գրեանս —.
յորս թէպէտ շրջեցաւ նուի-
րակն Վենետիկոյ Մխիթա-
րեան ուխտին Հ. Ներսէս ա-
մօք ինչ յառաջ. և էր զոր
օրինակեաց. էր զոր գաղեաց
ծրարեաց 'ի պարկին, և էած

'ի կղզին Ս. Ղազարու. բայց գիտեմ քաջ զի ոչ հանդիպեցաւ նա յամենայն տեղիս, և ոչ կարաց տեսանել, և առնել կամ գաղափարել զամենայն. քանզի մերքս սովոր են ծածկել և չյայտնել քննողին և հարցանողին զբովանդակ զինչ և իցէն: Մանաւանդ եթէ ծանիցեն թէ յուզողն և հարցանողն կաթօլիկ է:

Ահա գրանոց մի յԱմբրդօլու վանս 'ի Բաղէշ, ուր հարուստ թուով ձեռագիրք գտանին, որպէս պատմէ համբաւն. բայց արգիլեալ փակեալ մնան 'ի գէճ խշտիս ընդ քարուկրաւ, զորոյ գրան փականաց բանալին ունի ա-

սեն , որ երեսփոխանն ընտրի եկեղեցւոյն . ոմանք 'ի բանասիրաց , և յառաջնորդացն անգամ կամեցեալ են տեսանել , այլ չէ լեալ հնար . սակայն լուայ 'ի յետին աւուրս զի ցանկ նոցուն գրեցին , և պահեն յԱռաջնորդարանի ։

Անծանօթ մնան ինձ' այլ վանորայք յայսմ մասին . տեսի միայն 'ի սուրբ Առաքելոց վանս զերկու հատորս ճառընտրաց ընտիր մագաղաթեայ մանր երկաթագիր , և 'ի լուսանցսն նրբանկարս ծաղկանց և թռչնոց գծագըրեալս , որոց' դիրք մեծութեան կանգուն մի 'ի լայնութիւն և քան զկանգուն ա-

ռուել յերկայնութիւնն է։ Զքանիս 'ի նկարաց մկրատիւ հատեալ և հանեալ են, ըստ-որ և զգիրսն՝ որ 'ի միւս երեսն։ Լուեմ ասել թէ ե՞րբ, ո՞վ, և առ ի՞նչ զայն արարեալ։

Իբր նախ քան զքսան ամ, ունէր Առաքելոց վանքն ոչ սակաւ ձեռագիրս զետեղեալ յարկեղս և եդեալ 'ի խորանին որ առընթեր Աւագտաճարին յաջմէ կուսէ. բայց այնքան անայցելու թողեալ էին զայնոսիկ, և անհոգ ըզտանեաց նորին, մինչեւ յամս քանիս 'ի ձիւնոյ և յանձրեւոյ ծածկեալ ձեղուն, և ձիւնք և շաղախք թափեալ 'ի վերայ և 'ի մէջ արկեղցն,

տպականեալ էր և փչացու-
ցեալ զրագրումն ։ Զարդիս
նոր վանահայրն Արժ. Յով-
հաննէս վարդապետ Մու-
րատեանն, խնամ ունի վասն
Միացելոցն, և հոգայ դշխ-
նութիւն սուրբ տանն և տա-
ճարին ։

Իսկ 'ի վանսն սուրբ կա-
րապետին, ուր կայի ես ամս
քանիս, գրեանք առ հասա-
րակ տպագիրք և ձեռագիրք
ընդ ձեռամբ լուսարարապե-
տին էին, զորս պահէր յար-
կերդս 'ի մէջ 'ի տաճարին ։
Զնկարագիր աղէտից պահ-
պանութեան և դարմանոյ
նոցին գրել արդարեւ ար-
ժան է, բայց ես խնայեմ
'ի ծերունին այն. այր արդա-

րեւ միամիտ յայսպիսեաց սակի, և եթէ մեղադրիցեմ զորս պարտ իցէ մեղադրել, դատեն զիս իբրեւ պարսաւագիր 'ի մասնաւորի այնմ ուխտին միաբանելոց, և կառավարելոցն · վասն որոյ վերըստին լռեմ։ Զայս և եթ ասեմ · յաւուրս վանահայրութեան Ս. Հայրիկին սկսաւ և յիմում փոխանորդութեան աւարտեցան Նորաշէն դրադարանք կամ Թանգարանք, յորս հոգի առեալ շարեցան մատեանք ամենայն · ոչ սակաւ գրեանս եւս յաւուրս մեր գնեալ յաւելաք 'ի նոսին։

Զիք այնքան նշանաւոր թուով և նիւթով ձեռագիր յայս հռչակաւոր վանսն, ան-

չու չու կործանեալ կամ ոչընչացեալ իցեն. քանզի չհաւատամ թէ արդեօք յամենայն աւուրս միաբանք վանուցս անգրասէր եղեալ են։ Ցուցակ անուանցն ձեռագրոցն որ անդանօր, յայսմիկ գրքոյկիս տամ 'ի տիպ։ Ընդ որ և Օրինակ մի Թղթոյն Դիոնէսիոսի Արիսպագացւոյ 'ի ննջումն Աստուածամօր կուսին. և Ցիշատակարան մի 'ի Հարանց վարուց գրոց, որոյ վասն չունիմ ինչ կանխաբանել, և ոչ զհաւաստեաց ինչ երաշխաւորել, թողեալ հմտագունիցն 'ի զննելն։

Ծուշտեմ տպագրեալ իցէ՞ այս մասն Պատմութեան, որ

յաղագս աշակերտութեան Մովսէսի և Դաւթի, չինող լինելոյ նոցա զքաղաքն կարին, գնալոյ յԱթէնս, ուրանօր լինելոյ նոցա և յառաջանալոյ, և ՈՒՍՈՒՄՆԱՊԵՏՍ կարգելոյ. որ ունի նաև զնկարագիր արարողութեանց քննութեան ուսումնարանի Հանդիսի, ուր ԱՆՑԱՂԹ Հանդիսացեալն է Ներգեվանցին չինական. զդարձ նոցա 'ի Բիւզանդիոն, ուր պատահել Յոբնաղայ, և գոչել Խորենեան Աբօյին՝ յանձնապատան և ահագին իմն ձայնիւ. «Ճանաչե՞ս զիս, Յոբնաղ, ԵՍ ԵՄ ՄՈՎՍԷՍ, և սա ԴԱՒԻԹ»։ Բարբառս այս և եթ չատ էր նկուն առնել զախոյեանն։

Ի սա պատմի որոտաուղ վե-
րադարձն 'ի Հայաստան ։ Նոր
ծագումն երկոցունց արեգա-
կանց 'ի մտիցն արեւու՝ յելս
արեգական ։ Ողբ և մրմունջ
վասն վարդապետաց ծնողաց
հոգեւորաց ։ Մորմոք յաղա
գըս անկման արքային և ար-
քայութեանն Արշակունի ։
Նահատակութիւնն ԿԱՐՄԻՐ
Վարդանայ ։ Եւ այնուհետև
լքանել գնալ ամփոփիլ Մով-
սիսին յանյայտ և յանշուք
անկիւնս չինականաց · ցնցո-
տիս զգեցեալ, 'ի ցուպ յեցե-
եալ · պայծառ Աթենացին՝
յազգիս Հայաստանեայց
դարեալ թաքեալ ։

Գիւտ հրաշագիւտ 'ի ձեռն
հայրապետին Գիւտայ, որոյ

՚ի տես և ՚ի փառս երեւնաց երգեաց բիծայն խորհենացին աղաչանօք գեղջկականաց զայն մեղեդին վսեմ. «Ո՛Վ Արտօյանէրող, Տէր, Քահանայապետ, Սուրբ, և Հովուապետ բարի. . . . »:

Խանդաղատել, փարել զալեօք ծերունւոյն՝ Հայրապետին մեծի. և զբիծայն Քաղաքադաշտին, ընդ որ խաղ առնէր մանկտին, վերակոչել ՚ի մեծ աւագութիւն յաստիճան եպիսկոպոսութեան: Եւ որ զկնին:

Քաղուածք ինչ, կամ իբրու զծանօթութիւն վերջնոյ մասին պատմութեանս յիշեմ ընթերցեալ ՚ի Բազմավէպն վենետկոյ. բայց կարեմ ոչ

ասել թէ՝ Արդեօք 'ի մասնէ յայսմանէ գրութենէ՞ էր, եթէ յայլմէ իմն օրինակէ։ Կամ թէ յետ այնորիկ եղե՞ւ ոք հրատարակող զայս. չիք իմ տեսեալ։ Քանզի և ես կարօտ մնամ բազմաց գրեանց Հայեցեաց տպագրելեաց, չունելով տեղի հաստատուն. կամ պատահումն այնպիսւոյ բարութեան վիճակի, նստելոյ առ սնարօք գրատանց, և պարապելոյ յընթերցմունս գրենեաց։ Բայց և ո՞վ յազգի մերում վարդապետ, և այսըմ բարւոյ դիպեցեալ։

Ոճ գրչի ճառիս և պատմութեանս գեղեցկայարդ է. և 'ի տեղիս տեղիս հայկաբանութեամբ վսեմ. իսկ թէ

ո՛ ոք իցէ հեղինակ սմին, և թէ անքիծ և անխառն իցէ՞ որպէս կանխաւն բնագրեալ. սակայն ինչ ոչ. զի ինքնին տեսանի բանն ։

Մասնաւոր՝ յորմէ գաղափարեցի զոյս մասն յաղագս Դաւթի և Մովսիսի, պարունակէր երկարօրէն Հայոց մա-Քաղկեդոնականաց և Պորտախանէ ՚ի Մովսէսէ և Դաւթայ. Նաեւ Մեկնութեան Պորփիւրէ և Մեկնութեան ներածականէ. որպէս և ՚ի ճակատ գրոցս գրեալ էր «Այս ինչ «գիրքս խուռն գտանի, էակք «Դաւթի և Մովսիսի ։ (Որ ու-«նի) զբնաբանն Պորփիւրի, և «զքերականն Հոմերոսին, և «զմեկնութիւնն Մաժխաւրո-«նին Փիլիսոփայ Գրիգորին» ։

-- Իսկ 'ի վերջ՝ յիշատակա-
րանս այս. «փառք Ամենա-
«սուրբ Երրորդութեանն Հօր
«և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ.
«Ամէն: Արդ գրեցաւ գիրքս
«այս, որ կայ 'ի սմա քերա-
«կանութիւն և բառ քերա-
«կանի, և մեկնիչ. և . . .
«զոր տեսանէք, ձեռամբ
«անարհեստ և մեղսաներկ
«անձին Յովաննէս կոչեցեալ,
«որ եմ Եւդոկիացի. Թվ.
«ՌՋԳ: Արդ որ օգտիք 'ի
«սմանէ ուսանելով կամ օրի-
«նակելով յիշեցէք 'ի տէր ան-
«նախանձ մտօք զխոցեալ հո-
«գիս մեղօք՝ մի ողորմեայիւ,
«և Աստուած զձեզ յիշէ.
«Ամէն»:

Ի սոյն մատենկիս կցոր-

դեմք և զՇիրիմն Մ. Սուքիասանց, և զնոր պատմութիւն ինչ Դոմէնէշ Նոքէն, և Եղբէ Մէրղըէ, կամ Քէշէ Պօլօն, զորոց ունին տեսանել ընթերցողք՝ գրեալ յիւրեանց կարգին։

ՀՐԱՏԱՐԱԿԻՉ

ՄՐՈՒԱՆՁՏԵԱՆՑ

Գ. Վ.

# ՅԱՂԱԳՍ

## ՍՐԲՈՑ ՎԱՐԴԱՊԵՏԱՑՆ ՀԱՅՈՑ

## ՄՈՎՍԷՍԻ ԵՒ ԴԱՒԹԻ

ՈՐԴԻՔ լուսոյ և վերինն Սիոնի տեսանեմ զձեզ այսօր Աստուածային և երկնային լուսով փայլեալ 'ի վարդապետաց սրբոց հարցն. որպէս զարեգակն աննուազելի և անկարօտ, ահաւոր տեսլեամբ ճառագայթս արձակեալ և լուսաւորեալ զաշխարհս Հայաստանեայց. զանյաղթելին և զանպարտելին ասեմ զԴաւիթ և զՄովսէս աշակերտք և որդիք Սահակայ և Մեսրովպայ վարդապետացն՝ Հայոց մեծաց:

Արդ 'ի սոյն ժամանակի եղեւ լրումն թագաւորութեանն Հայոց. և արքայ Թէոդոս փոքր, տիրեալ աշխարհին Յունաց, 'ի ծ. ամի թագաւորութեանն իւրոյ եղեւ չար հայհոյութիւն 'ի վերայ մարմնացեալ բանին Աստուծոյ. Նեստոր մետրապօլիտ Կ. Պօլսի ոչ խոստովանէր զբանն Աստուած մարմնով ծնեալ, այլ 'ի մարդ բնակեալ. քանզի ասէր՝ բնակութիւն ընկալաւ զմարմինն, և այլ անթիւ էր նորա հայհոյութիւնն որ 'ի վերայ Բ. Բնութեանն և հակառակէր ընդդէմ ճշմարիտ վարդապետացն։ Զի երանելիքն 'ի հին և 'ի նոր կտակարանաց զպանիր, և զիւղ, և զձէթ, և զգինի մի ասացին. իսկ անիծեալն՝ զձուկն ջուր ա-

սաց, և զճէթն և զգինին 'ի փայտէ, զի կամեցաւ ապականել զսուրբ աղուհացսն. և հրամայեաց թագաւորին ժողով լինել յԵփեսոս, Մ. եպիսկոպոսաց։ Յոբնաղ Երուսաղեմի, մեծն Կիւրեղ Աղէքսանդրու, Յոհան Անտիոքայ, Պրոկղոս Կիւզիկայ, Թէոդորոս Անկիւրայ, Ս. Կղեստինոս Հռովմայ։ Գրեն և առ սուրբն Սահակ գալ 'ի ժողովն։ Իսկ նա ոչ չոգաւ, այլ թղթով միաբանեալ ընդ նոսա անիծէր զանօրէն Նեստոր։ Ցայսմ ժամանակիս եղեւ խնդիր պակասութեան գրոյն Հայոց, զոր ունէին, . ԻԹ. գիր 'ի Դանիէլէ միլիտոնայէ Ասորոյ աշակերտ սրբոյն Գրիգորի։ Իսկ սուրբն Սահակ և Մեսրովպ բազում աշխատութեամբ

և առաքէր առ սուրբն Սահակ
և Մեսրովպ թուղթս գոհացողա-
կանս, և վասն թարգմանութեան
գրեանցն ; զի շուտով արասցեն
զթարգմանութիւնն, մինչ ես 'ի
մարմնի իցեմ • զի մի՛ Արիոսա-
կանքն խառնեսցեն և այլայլես-
ցեն զբանս Աստուածաշունչ գը-
րոց գրեանցն ։ Եւ հրամայեաց
թագաւորն Եւթաղեայ՝ ցանկօք
փակել տուն առ տուն, և վկա-
յութիւն առ վկայութիւն, զի
մի՛ այլականեսցեն հերձուածող-
քըն զգրոց պատուիրանսն ։ Եւ
հասեալ թուղթն առ սուրբն Սա-
հակ և Մեսրովպ, և խնդիր արա-
րին մանկանցն • և ընտրեցին ա-
շակերտս խ• մտաւոր և սրագը-
լուխս՝ և լեզուս հրեղէնս ներ-
կեալ 'ի շնորհաց Հոգւոյն սրբոյ

և ուսուցին զնոսա զշնորհս վարդապետութեան լիով ընկալեալ յանձինս իւրեանց, և եղեն արք երեւելիք և կատարեալք շնորհօք Հոգւոյն սրբոյ: Եւ յետ աւուրց բազմաց առաքեցին արս Ե. Սահակ և Մեսրովպ առ Թագաւորն Թէոդոս զի Թարգմանեսցեն ըզ գրեանսն: Դաւիթն անյաղթ կոչեցեալն փիլիսոփայ, և Մովսէս քերթողահայրն, իմաստասէրն Մամբրէ, և հռետորն Աբրահամ, և սոցին նմանակիցն Պօղոս, առաքեցան 'ի կայսերական պալատն: Եւ Թագաւորն Թէոդոս յոյժ ուրախ եղեւ, և փառաւորութեամբ ընկալաւ զնոսա. և զԴաւիթ, և զՄովսէս դաստաւորս կացոյց 'ի տանն հայրապետանոցին. և 'ի Թարգմանու-

թեան ոչ դադարէին • կամեցան հրամանաւ Թագաւորին երթալ 'ի փիլիսոփայական քաղաքն՝ Աթեթէնք։ Իսկ Թագաւորն խորհուրդ 'ի մէջ առեալ կամեցաւ շինել քաղաքս երկուս, և զնոսա կացուցանել վերակացու շինուածոյ քաղաքին, զի տեսանէր զնոսա յոյժ իմաստունս և հանճարեղս • և առաքեաց զնոսա 'ի Հայս շինել զկարնոյ քաղաք՝ և յիւրոց պաշտօնէից 'ի կողմն Հայոց աշխարհին Ամիթ՝ զոր էր շինեալ զնա հօրն Արգարու Թագաւորին Հայոց։ Իսկ Պաւլիթ և Մովսէս որպէս զարս քաջս անդադար ընկիզքն արարին շինել զքաղաքն Կարնոյ, և հրաման Թագաւորին սպառնայր, և խրատ նոցա զօրանայր և աճաւոր շինուածով

երթայր քաղաքն և զօրանայր ․ և կանգնեցին բուրգն խորովային , և անահ 'ի մեքենայից ․ և պարիսպ երեք 'ի վերայ միոյ հիման ․ քերեալ և պեղեալ զհող երից պարսպին՝ զոր 'ի միջին և եթ կայր պեղել հրամայեցին մինչեւ 'ի պորտ քաղաքին , և վէմս անշարժս կրով զերեսս անդընդոց փակեցին , և 'ի վերայ միոյ հիման կանգնեցին երիս պարիսպս , և 'ի ներքս 'ի կողմ քաղաքին աստիճանս երկերիւրս մի առ միով յետոյ յետս՝ զի մի' զայթակղեսցի պարիսպն 'ի փորողացն ․ Նոյնպէս և 'ի դրանց կուսէ պարսպին աստիճանս երկերիւր մի առ միով յետոյ յետս , զի անահ լիցի 'ի փորողաց Թըշնամեաց քաղաքին ։ Եւ այլ հը-

Նարս հնարեցան զի թէ գուցէ գայցեն թշնամիք, և նեղեսցեն զքաղաքն և մուտ և ել ոչ տան առնել՝ արարին ներքնափոր 'ի մէջ քաղաքին, փորել 'ի ներքոյ գետնոյ խորագոյն, և գնացեալ 'ի մէջ դաշտին ճաշոյ մի գնաց ճանապարհ, 'ի տեղին ուր ժողով ջրոցն է և չամբ յոյժ, զի թէ նեղեսցեն զքաղաքն կարող են բերել անասնոց խոտ և այրելոյ եղէգն. և թշնամիքն զայս ոչ կարասցեն իմանալ: Եւ միւս կողմն քաղաքին նոյնպէս գետնափոր փակած մեծամեծ վիմօք, մինչև 'ի լեառն որ կոչի Այծուպրտակունք, թէ կարիք հասանիցեն հեծելոց՝ կարող են բերել ձիօք և հեծելօք և մտանել 'ի քաղաքն առանց գիտելոյ թշնամեացն:

Եւ վասն ջրոյն կարի գեղեցիկ է
և վայելուչ, զի ոչ ոք է 'ի քա-
ղաքիդ ոչ հարուստ և ոչ աղքատ
որ ոչ ունի ջուրս անուշս բերեալ
զերեսօք անդնդոց. ապարանք
և աշտարակք գեղեցկաշէնն և
արքագործս, փողոցք; և հրա-
պարակք, սպանդանոցք և վա-
ճառանոցք, արքաատեսիլ եկեղե-
ցիք հրաշալիք տեսողացն, և դը-
րունք քաղաքին բարձրաբերձս և
լայնանիստ և կատարեալ պա-
րսպաւ վայելուչս, և բուրգքն
ամենայն խոսրովայինք: Եւ պա-
րապեալ յամենայն գործոց քա-
ղաքին խաղացին գնացին յաշ-
խարհն Յունաց առ Թագաւորն
Թէոդոս, և լուեալ վասն քաղա-
քին՝ առաւել քան զառաջինն մե-
ծարէր զնոսա, և հրամանաւ

արքունի առաքեաց զնոսա յԱ-
թէնս․ և մեծաւ չքեղութեամբ
խաղացին գնացին 'ի փիլիսոփա-
յական քաղաքն ։ Դաւիթ, Մով-
սէս, Մամբրէ, և Պօղոս, և Աբ-
րահամ ։ Եւ մտեալ յիմաստասի-
րական քաղաքն Դաւիթն և առ-
եալ զթագաւորական մատանին
ցվարդապետն իմաստասիրաց, և
առեալ 'ի նոցանէ յոյժ ուրա-
խացան, զի 'ի վաղուց հետէ ըս-
պասէին նոցա գալստեանն, զի
համբաւ բաղում ելեալ էր վասն
նոցա յԱթէնս ։ Խօսեցան ընդ
Մովսէս և ընդ Դաւիթ, և հա-
ճոյականս խօսեցան ընդ նոսա,
և հաւանեալ սիրական բանից
նոցա, և վարդապետն հրամայ-
եաց նստուցանել զնոսա յատեն-
ձանին զի անխափան ուսանիցեն

դիփլիսոմայական ուսումն ։ Իւ
սկիզբն արարին ուսման և եր-
թալով երթային և զօրանային
և տեղեկացեալ լինէին ուսման
դիփլիսոմայական ։ Գային և յԵ-
գիպտացւոց Ասորւոց ։ Իւ յետ
ուսուրց բազմաց գային 'ի Կա-
պադովկացւոց աշխարհէն վար-
դապետք Յունաց, Գրիգոր որ
յետ բազում չարչարանաց և հա-
լածանաց կոչեցաւ Աստուածա-
բան, և Գրիգոր Նիւսացի և Բար-
սեղ Կեսարացի, եայլն, բանից
փորձելով դիփլիսոմայական ար-
ուեստիւ՝ զնոցանէ, ասէ. իբրև
կատարեցան ամք ուսման՝ Դաւ-
թի և Մովսէսի, Մամբրէի վեր-
ծանողի, և Թօղոսի և Աբրահա-
մու ամք է ։

Աղդ՝ սովորութիւն էր Աթե-

նացուոցն, զի յորժամ կատարէին ամք է· բերէին զժամանակին ուսեալքն. և էր 'ի մէջ քաղաքին սիւն մի մեծ և բարձր յոյժ պղ-ղընձի. և էր գրեալ թագաւո-րական բանք է· թագաւորի. բանք սակաւ և մեկնութիւն բա-զում, բան առ բան գլխաւո-րեալ. գրեալ առ Աիբերիո-սիւ Մուղղոսիւ Հռովմայեցւոցն թագաւորաւն. և ըստ Եբրա-յեցւոցն, թագաւորաւն՝ առ գերութեամբն Բաբելացւոց։ Արդ՝ որ զօրցա բանս կար-դայր և մեկնէր, զնա՝ կայուցա-նէին վարդապետ ամենայն իմաս-տասիրական ուսմանն. զոր էր 'ի յայն է· ամի ուսեալ. և զո՛ր-չափ ժամանակս կայր յԱթէնս, նա էր վարդապետ։ Եւ էր գրեալ

'ի սիւննն բանքս այսպէս . Է. Թա-
գաւորի ։ Սողոն Աթենացի՝ ՄԻ՛
ԻՆՉ ՅՈՅԺ ։ Թագաւոր Քէղոն
Մակեդոնացի՝ ԾԱՆԻ՛Ր ԶՔԵԶ ։
Թագաւոր Թէզէս Մեղէսացի՝
ԵՐԿԻ՛Ր, ՄԵՐՁ ՎՆԱՍ ՄԵԾ ՅՈՅԺ։
Թագաւոր Դիաս Պիրենդացի՝
ԲԱԶՈՒՄՔ ՉԱՐՔ։ Թագաւոր Պիտա-
պակոս Միդեղէնացի՝ ԺԱՄԱՆԱԿ
ԾԱՆԻ՛Ր ։ Թագաւոր Պիափանդ-
րոս Կորնթացի՝ ՎԱՐԺՈՒՄՆ ԱՄԵ-
ՆԱՅՆԻ ։ Թագաւոր Կղէբուղոս
Ջենդացի՝ ՉԱՓԱՒՈՐ ԵՒ ԱՆԲԱՒ ։
Որք կատարեալք փարդապետու-
թեամբ որ էին Կ. հացուցին ա-
ռաջի նեանն . եթէ ո՛վ ոք է որ
մեկնեացէ զբան Թագաւորացն ,
և ամենեքեան պշուցեալ հայէին
ընդ երեսս նեանն . և անգի-
տելնային էր բանն այն 'ի նո-

ցանէ. և միտ եդեալ Դաւիթ և գաղտ 'ի միտսն սկսաւ մեկնել բան առ բան և իմացեալ եթէ ճշմարիտ գտի զմեկնութիւնն, և համարձակեալ էանց եկաց յատենին և ամենեքեան առ հասարակ 'ի նա հայէին, զի քաղաքն առ հասարակ եկեալ էին 'ի տեսիլ բանիցն։ Եւ ելեալ Դաւիթ 'ի վերին աստիճանն, և ձեռօք սկսաւ զամբոխն խաղաղացուցանել, և վարդապետացն հրամայեաց զի լռեսցեն, և լռեալ դադարէին. և Դաւիթ որպէս զամանն լուսեղէն սկսաւ ծագել զլոյս վարդապետութեան իւրոյ, և բան առ բան զծածկեալ թագաւորացն մեկնէր ահաւոր բանիւք. և ամենեցուն հիացեալ զարհուրեցան ընդ ճշմարիտ նը-

մանութիւն բանիցն յերկրախօս-
տուն տուն հանէր զբանն. և բե-
րեալ ասպար ոսկի զարդարեալ
ակամբք և մարգարտով. և Դա-
ւիթ եդեալ 'ի վերայ ասպա-
րուն և ընկերք ուսմանն իւրոյ,
բարձեալ 'ի վերայ ուսոց և գըլ-
խոց՝ ձայնեալ 'ի վերայ նորա ա-
նուն անյաղթ. որով կոչեցաւ Ան-
յաղթ փիլիսոփայ. և զօրն ամե-
նայն ածին ընդ քաղաքն 'ի շուրջ
ձայնիւ ցնծութեամբ սրնգովք
և փողովք. և Աստուածաբանն
և Նիւսացին հաւանեալ ուսման
Դաւթի. և կացուցին զԴաւիթ
վարդապետ ամենայն Աթենաց-
ւոց: Իսկ յետ է. ամացն դար-
ձան Գրիգոր Աստուածաբան և
Գրիգոր Նիւսացին յաշխարհն
իւրեանց կոչելով զնոսա Հայրա-

պետական աթոռ, որում արժանաւորեցան նստել. իսկ Մովսէս և Դաւիթ կացին զամս Զ:

Արդ՝ եղեւ յետ փոխելոյ յաշխարհէս Գրիգորի Աստուածաբանի և այլոցն ամենեցուն ընկերաց իւրոց, և մեծին Թէոդոսի: Նստաւ անօրէնն Մարկիանոս, և առեալ զքոյր Թէոդոսի թագաւորի, Պօղքեր անուն յաղանդից չար հերձուածոյն Նեստորի, որ Բ. բնութիւն, և Բ. կամք, և Բ. ներգործութիւն մարմնացելոյ Բանին Աստուծոյ ասէր՝ ըստ ոչ հարցն խոստովանութեան, զոր 'ի Նիկիայ և 'ի նոյն քաղաքն Կոստանդնուպօլիս և յԵփեսոս:

Ցուցուքս յայտնիկ բարձեալ լին սուրբ հարքն յաշխարհէս և

սակաւ ինչ աւուրս յառաջ սուրբն Սահակ և Մեսրոպ հրաժարեալ յաշխարհէս. և անտիրն ընկալեալ 'ի հրեշտակէն 'ի Վաղարշապատ քաղաքի զնուազիլ թագաւորութեանն և հայրապետութեանըն, և դարձեալ նորոգել զհայրապետութիւնն և զթագաւորութիւնն, զի չեւ էին արհամարհեալք . . . . . . . . . . . . :

Յայսմ ժամանակի Մարկիանոս թագաւոր որպէս քինախնդիր լեալ Նեստորի հանդերձ կնաւն Պողքերիաւ, հրամայեաց ժողով մեծ լինել 'ի Քաղկեդոն առ 'ի յապականել զկանոն սուրբ հայրապետացն և զքրիստոսասէր թագաւորացն, ուրանալ զմի բնութիւնն՝ որ 'ի վերայ մարմնացեալ Բանին ասացին: Գրեն 'ի Հայք

առ սուրբն Յովհէփ աշակերտ սրբոյն Սահակայ գալ եպիսկոպոսօքն Հայոց յուրացողական ժողովն Քաղկեդոնի ։ Յայսմ ժամանակի մեծ պատերազմ կարգեցաւ յաշխարհն Հայոց յանօրէն Յազկերտէ, Պարսից արքայէ, զի թողցեն զքրիստոսական խոստովանութիւնն և դարձցին յերկրպագութիւն արեգականն . իսկ քաջն և հզօրն ԿԱՐՄԻՐՆ Վարդան, որդի դստեր սրբոյն Սահակայ, ժողով արարեալ ընդդէմ Յազկերտի 'ի պատերազմ արս ԿՆՌ· արանց քաջաց, որք կամէին մեռանել 'ի վերայ Քրիստոսի, զի խառնեսցի արիւն իւրեանց 'ի յարիւն մարտիրոսացն, որպէս պատմէ Աղէնացին Եղիշէ· աշակերտ սրբոյն Մեսրովպայ ըղ

պսակութիւն սրբոյն Վարդանայ ։ Ցայսմ ժամու եղեւ միաբանութիւն երից կամարարացն առ իրեարս, Սատանայ և Քաղկեդոն և Ցազկերտ, 'ի միում աւուր յարեան 'ի պատերազմ ընդ եկեղեցին Աստուծոյ . . . . . . ։ Արդ եթէ որքա հակառակ գտանի հաւատոյ, սակայն կարմիրն Վարդան հանդերձ մեծամեծօքն Հայոց և դասուց հայրապետացն զմահ յանձն առին յԱրտազական դաշտին 'ի Նպատակ լերինն և յաշխարհին Աղուանից, խոստովանելով առաջի անհուն զօրացն զհաւատս ճշմարիտ որ 'ի Հայր և յՈրդի և 'ի սուրբ Հոգին ըստ սրբոյ հարցն, և կատարեցան. մեծաւ հանդիսիւ արեամբ մահու ։ և յիշի 'ի մէջ Եկեղեցւոյ

մինչեւ ցայսօր ժամանակի. որպէս պատմեաց Եղիշէ աշակերտ սըրբոյն Մեսրովպայ զիմաստութիւնն վարդանայ ։ Եւ լուեալ զմեծի պատերազմէս Մարկիանոս և ամենայն տունն Հոռոմոց ուրախ լինէին, զի վասն խառնակութեան հաւատոյ էր պատերազմ և ըզ յաղթութիւն իւրեանց համարէին. այսու կարծէին սփռել զաղանդն Քաղկեդոնի ։

Յետ այսր ամենայնի անցից հրամայեաց Մարկիանոս դարձուցանել զՆեստոր 'ի հայրապետութիւնն. որ 'ի գալն սատակեցաւ չարաչար մահուամբ յանմաքուր տեղւոջ ։ Եւ ժողովեալ 'ի Քաղկեդոն եպիսկոպոսաց ՁՃԼԶ. 'ի սրբոց և յանսրբոց. Յոբնաղ Երուսաղէմի ։ Մեծն Դէոսկորոս

Աղէքսանդրի, որ գլուխ էր երկ-
րորդ ժողովոյն Եփեսոսի · Մաք-
սիմիոս Անտիոքու · Ստեփաննոս
Եփեսոսի · Լեւոն Հռովմայ · Եւ-
սեբի Դորեզու · Անատոլիոս Կոս-
տանդնուպոլսի։ Իսկ Լեւոն Հռո-
մայ ոչ եկն 'ի ժողովն, բայց եա
բերել առ Թագաւորն զԹուղԹն
իւր զԾԴ · գլուխն առ Փլաբիա-
նոս գրեալ, զի հաւանեսցին այնմ՝
ժողովեալքն որ 'ի Քաղկեդոն,
զոր իմացեալ սորոյն Դէոսկորոսի
և ժողովոյն ընդ նմա խոստովա-
նելով Թշնամանեցին և որք ընդ
նմայն էին յԵփեսոս, և առեալ
Թագաւորն զգրեալսն Լեւոնի
ընկալաւ և եա զատուցանել ըզ
Դէոսկորոս և խնդրեաց 'ի ժո-
ղովոյն սահման ըստ գրելոյն Լե-
ւոնի հայհոյութեան ։

Իսկ ուղղափառ իշխանքն որ էին 'ի ժողովն՝ ասէին այսպէս առ եպիսկոպոսունքն ․ Այս է ժամանակ ձեր ճգնել 'ի վերայ հաւատոցդ , զի հաստատուն լիցի ըստ առաջին կարգն խոստովանութիւն ։ Եւ եպիսկոպոսացն ասացեալ , ոչ ումեք՞է իշխանութիւն ըստ հրամանի կանոնացն դնել սահման հաւատոյ ․ զի բաւական է մեզ այն՝ որ 'ի Նիկիայ և 'ի Կոստանդնուպօլիս և յԵփեսոս ։ Յայնժամ հրամայեաց թագաւորն Մարկիանոս զմիաբանեալ եպիսկոպոսունսն և զիշխանսն արկանել 'ի բանդ , զի թէ ոչ հնազանդեսցեն կամաց թագաւորին եղիցին պատուհասեալք․ և մեծաւ երկիւղիւ ահաբեկեալ եպիսկոպոսունքն և էին 'ի մեծ

տարակուսանս՝ եթէ զիարդ լի-
նիցի հնար զերծանիլ 'ի պատ-
ժոցն : Ցայնժամ Ցորենադ Երու-
սաղէմի եպիսկոպոսն հրամայեաց
Ասկղիպեայ սարկաւագին կոս-
տանդնուպօլսի առնուլ զսահմանն
հաւատոյն, և դնել 'ի նմա բ.
բնութիւնս. այնու առ երկիւղի
հաւանեալ եպիսկոպոսացն, զի
այնիւ հնար լիցի զերծանիլ 'ի
չար պատժոցն. առաքեցին զգիրն
առ թագաւորն և նա ոչ ընկա-
լաւ զայն բանն. այլ ետ տանել
զգիրն հայհոյութեան Լեւոնի,
զոր ընթերցեալ մասն ինչ գլխոյն
և խմացեալ զդառնութիւն բա-
նիցն, և միաբան աղաղակ բար-
ձեալ արտասուագոչ ձայնիւ ա-
սէին. Այս բանիցս ոչ հաւա-
տամք, և ոչ ընդունիմք. ահա

սպատրաստ եմք կապանաց և գե-լարանաց, զի այս Պօղոսի Սամոսատացւոյ է բանս. այսպէս և ոչ Նեստոր յանդգնեցաւ հայհոյել:

Յայնժամ թագաւորն և կինն իւր եկին առ նոսա 'ի գիշերի 'ի բանդն և եղեն առ նոսա աւուրս Գ. և ոչ հաւատացին սուրբ հարքըն: Իսկ ժողովեալքն 'ի Քաղկեդոն ոմանք յերկիւղէ հաւանեալ թագաւորին և կնոջն նորա Պողքէրիայ, և ոմանք ըստ Դէոսկորոսի հրամանացն լեալ հալածական վասն Քրիստոսի: Եւ որք 'ի Քաղկեդոն ասացին ուղղափառքն. Եթէ ոք ասիցէ Քրիստոսի Բ. բնութիւն, նզովեալ եղիցի: Եւ աշակերտքն Նեստորի ասացին. Եթէ ոք ասասցէ զմի

բնութիւն՝ նզովեալ եղիցի ։ Իսկ միաբան ասացին ուղղափառքն ․ Որ քան զերիս սուրբ ժողովն աւելի քարոզէ , նզովեալ եղիցի ։ Իսկ թագաւորն Մարկիանոս իմացեալ զբազմութիւն անիծիցն որ վասն իւր էր բանն , զի յոյժ յանդգնեցաւ , և հրամայեաց աքսորել զերանելիսն յաշխարհ հեռի ․ զՊետրոս եպիսկոպոս Անտիոքացի հանդերձ աշակերտօքն իւրովք սպանին սրով ․ և զԴէոսկորոս և զՏիմոթէոս , և զԱնատօլիս եղբայր Պետրոսի Անտիոքացւոյ և զՍտեփաննոս 'ի Կիլիկոն քաղաք աքսորեցին , և ապա յՀերակլիոյ և 'ի Պամփագոնիոյ , և անդ կատարեցան բարւոք վկայութեամբ 'ի վերայ Քրիստոսական հաւատոյս ։ Եւ զայս ամե-

նոյն գրեաց 'ի Հայք Պետրոս Անտիոքացին, զի մի' միաբանեսցին չար սպաշտօնէիցն Քաղկեդոնի երեսպաշտացն և զքրիստոս ուրացողացն։ Շփոթումն մեծ արարին եկեղեցեացն Աստուծոյ, և զփառաւորս և զգլխաւորս հայրապետացն անարգեցին. և զանարգսն և զյոռիսն և զներքինսն մեծարեցին, զոր Հոգին սուրբ որոշեալ էր յեկեղեցւոյ. և սահմանեցին զքրիստոս բ. բնութիւն և բ. կամք, և բ. ներգործութիւն չարչարեալ և անչարչարելի, և մարմին ապականացու. և վասն այնր ապականեցին վհաց սուրբ պատարագին և ջրով աւանդեցին զարիւն պատարագին և աղով՝ զոր ոչ հրամայեաց Հոգին սուրբ. պատա-

ուեցին և զվարագոյր խորանին. բարձին և զխաչեցարն զպարծանս հրեշտակաց. բարձին և զծնունդն Տեառն 'ի յունվարի ամսոյ Զ. ին փոխեցին 'ի դեկտեմբերի ԻԵ. որ է օրն այն օր ծննդեան անօրէն Արտէմոնի. վասն այնորիկ անօրէնն Արտէմոն յիւր օրն սահմանեաց զծնունդն Փրկչին: Ուրացան և զկանոնսն Առաքելոցն, զոր ուխտաւորութեամբ ընկալան ամենայն եկեղեցիք ուղղափառաց: Եւ 'ի Քաղկեդոնն սահմանեցին ապականել զսուրբ աւուրս աղուհացին 'ի ձուկն, 'ի ձէթն և 'ի գինին ըստ Լեւոնի. վասն այնորիկ զարմացաւ Սատանայ, զի զայս ամենայն խմացեալ յՃռաւք 'ի սրտից Քաղկեդոնի: Զայս ամենայն խմացեալ

Հայոց և Ասորւոց, և ուրացան զաղանդղն Քաղկեդոնի, և զտօմարն Լևոնի ։ յետոյ բանութեամբ դարձուցին Ասորիքն 'ի այլ և այլ պատճառս զԾնունդն տեառն և զհաց սուրբ պատարագին ։ բայց զՔաղկեդոնն բնաւ ուրացան Հայք և Ասորիք մինչև ցայսօր . . . . . . . ։

Ըստ այսր անցից ժամանակացս և ահագին կատարածին լուեալ զդառն համբաւ կըսկիծ աղէտիցս Դաւիթ և Մովսէս և ոչ հանդուրժեալ՝ կամեցան ելանել յաշխարհէն Հայոց, և եկեալ 'ի Կոստանդնուպօլիս ։ և լուեալ վասն մահուան վարդապետացն Հայոց սուրբ հարցն Սահակայ և Մեսրովպայ ։ և վասն պատերազմացն որ 'ի վերայ քը-

քրիստոնէական հաւատոցն. և վասն կատարածին Վարդանայ և Նախարարացն Հայոց զօրացն. յարտասուս հեղեալ լային զաշխարհն Հայոց: Եւ լուեալ վասն ժողովոյն Քաղկեդոնի և վասն չփոթմանն և խառնակութեանն եկեղեցւոյ, տրտմեալ վիրաւորեցան. և յիշեալ զպարծանաց մահն Հայոց զօրաց որ 'ի վերայ Քրիստոսի, ուրախացան մեծաւ ուրախութեամբ. զի վասն անուանն Քրիստոսի եղեն արժանի արեամբ ելանել առ Քրիստոս:

Եւ լուեալ խնամատարք քաղաքին պատմեցին Թագաւորին Մարկիանոսի և կնոջ նորա Պուղքերիայ, եթէ Արք երեւելիք և փառաւորք 'ի Հայոց իշխին յԱթէնք 'ի վաղուց հետէ. և յա-

ւուրքս առաքեցան առ մեզ Դաւ-
ւիթ և Մովսէս աշակերտք սըր-
բոյն Սահակայ և Մեսրովպայ ։
Եւ լուեալ թագաւորն ուրախ
եղեւ վասն գալստեանն նոցա .
և ասէ ցնոսա . Ընդէ՞ր ոչ եկիք
'ի ժողովն մեր ։ Եւ նոքա ասեն .
Ի բազում չփոթմանէ մոռացաք ։
Եւ հրամայեաց կոչել զնոսա 'ի
թագաւորական պալատն . և էին
ծերացեալք , և կերպարանօք և
խօսիւք Աթենացիք ։ Եւ մեղադիր
լեալ թագաւորին՝ եթէ ընդէ՞ր
եղեւ ժողովն առանց մերոյ գա-
լըստեան և կոչման ։ Յոբնաղ, ա-
սէր, եպիսկոպոս պալատին, վասն
զի զձեզ ոչ գիտէաք կենդանիս
այլ մեռեալս ։ Մովսէս ասէր . Ժո-
ղովքն որ 'ի Հռովմ է լեալ , ոչ
է հնար առանց մերոյ ազգին

վկայութեան. որպէս Կոստան-
դիանոսի 'ի Նիկիա' և զալ Ա-
րիստակէսի. և 'ի նոյն պալատին
Թէոդոս' և զայն Ներսէսի. և
եղբայր թագուհւոյ յԵփեսոս
Թէոդոս' և թուղթ վարդապե-
տացն մերոց Սահակայ և Մես-
րովպայ: Բայց վասն մեր չկոչե-
լոցս չէ այդ պատճառն. այլ զի
կամեցայք ապականել զկանոն
սրբոց հարցն, և ձայնել 'ի վերայ
Քրիստոսի Բ. բնութիւն, և Բ.
կամս: Եւ ասէ թագաւորն, Ըս-
տոյգ ապականեցա՞ն կանոնք հայ-
րապետացն: Եւ ասէ Մովսէս.
Այո՛ ստոյգ չարչարեցաւ Քրիստոս:
Եւ դարձաւ Մովսէս 'ի Յորնադ,
և այլայլեցաւ գոյն երեսաց նորա
ընդդէմ նորա, և ասէ. Ո՛վ
Յորնադ, ճանաչե՞ս զիս, զի ես.

եմ Մովսէս, և սա Դաւիթ. բաղմահմուտ և գիտութեամբ ԾԲ. ազգաց, և պարծանք Աթէնացւոց, կենդանեաց և գերեզմանեանց, և առաւել Հայոց աշխարհին. և դու վասն մերոյին արաքեր չար ժողով: Եւ ասէ ցԹագաւորն. Հրամայեա՛ երկրիդ ժողով լինել 'ի պալատիս. զի բարձցուք զկարծիս որ կայ ընդ Հայք և ընդ Հոռոմք: Եւ հաւանեալ Թագաւորն զի արասցէ ժողով երկրորդ, և մատեան Ցորնաղ և չար խորհրդակիցքն նորա առ Թագաւորն և բազում բանիւք դարձուցին զնա 'ի կամս իւրեանց:

Եւ ասէ Թագաւորն. Զառաքաստեացի Մովսէս և Դաւիթ խօսել ընդ վարդապետացն մերոց.

և այն բաւական է մեզ․ զի ժո-
ղովոյ ոչ է ժամանակս այլ խօ-
սելոյ․ զի զոր հաստատեցաք՝
այլ չէ հնար շարժել, բայց յայլ
ժամանակի ։ Եւ ասէ Մովսէս․
Ցամենայնի պատրաստ եմք ամե-
նայն արուեստից ։ Եւ Մովսէս և
Դաւիթ ասեն զմիմեանս․ Այս է
ժամանակ մերոց խօսից․ Եղիցի
առ վաղիւն պատերազմ մեծ ՚ի
վերայ մարմնացեալ բանին Աս-
տուծոյ, որ միացաւ ընդ մեր
բնութիւնս Քրիստոս Աստուած
մեր ։ Եւ առ վաղիւն եկին առ
թագաւորն․ եկին և իմաստա-
սէրքն պալատին․ եկն և Պողքեր
թագուհին չար միաբանելովն․
և հարկեցին զՑօրբնաղ խօսիլ ընդ
Մովսէսի քերթողահօրն․ վասն
զի Ցօրբնաղ աշակերտ էր Նես-

տորի անհիծելոյն մետրապօլտի կոստանդնուպօլսի . . . . . . . . :

Հիացեալ թագաւորն Մարկիանոս և ամենայն իմաստասիրական ժողովն, զի տեսին ընդոստ անպարտելի և անսասանելի, լցեալ ահաւոր շնորհօք. զի որպէս զհոսանս գետոց լին 'ի պատասխանիս երկոքեանն, վասն այնորիկ այլ ոչ արարին քննութիւն. զի երևեցաւ յայս բանքս հարցեալ՝ շարակից հոլովումն բանից պայքարմանց բաղկացեալ: Եւ հերքեալ դտան երեք հերետիկոսքն Թշուառականք՝ յերից երանեալ երկուցն: Մովսէս ասեմ և Դաւիթ, կարկեալ զնոցա զանհերասանակ լեզուսն, որք աւ 'ի բերան եղեալ առաջի, և ոչ ինչ կարացեալ խօսել. իսկ նոցա

երկիրպագեալ երեւանց թագաւորին յանդիման մեծ աթոռոյն ; և թագաւորն բարեբանեալ զնոսա մեծաւ գոհութեամբ և ասէ · Մեծ ես ո՛վ Մովսէս · և երանի աշխարհին Հայոց 'ի տեսանել զսուրբ կերպարանս ալեաց քոց ։ Աւետիս մատուցանէ Արեւմուտք Արեւելեան աշխարհին · կարօտիւ ողջունեն զձեզ եկեղեցիք սրբոց ։

Իսկ Պօղքեր թագուհին վիրաւորեալ յոյժ՝ տեսանելով զնոսա ոչ յաղթեալ այլ յաղթող երևեալ , Թագաւորն հրամայեաց 'ի բաց գնալ ժողովոյն և շնորհակալ լեալ Դաւթի և Մովսէսի ։ Իսկ ամենեքեան սկսան 'ի թարգմանութիւնս գրոց անդադար , ոչինչ համարելով զտկարութիւն , այլ

'ի բաց եղեալ զծերութիւնն ։ Եւ Թագաւորն յաւուրս տօնի սրբոյ Խաչին հարկեալ զմեծ փիլիսոփոսն զԴաւիթ, խօսել զբանս շնորհաց 'ի պատիւ սրբոյ Խաչին․ և Մովսէս մեծարեալ զԴաւիթ զի խօսեսցի բանս ինչ․ Եւ Դաւիթ կամեցաւ կատարել զհրամանս Թագաւորին՝ ելեալ 'ի վերայ բարձր ամբիոնին, յանդիման երեսաց սրբոյ սեղանոյն, և քահանայքն բարձեալ զՆշանն տէրունական ։ Եւ Դաւիթ համբարձեալ զձեռս իւր խաչանման, կնքեալ նշանաւ խաչին և ասէր այսպէս ։ Բարձրացուցէ՛ք զՏէր Աստուած մեր, Մարգարէն ձայնէ․ երկիրպագեցէ՛ք պատուանդանի սրբոյ ոտից նորա․ և ես զնոյն ձայնեմ. ընդ-

Հոգւոյն, և որ 'ի կարգին։ Եւ հրաշարան շարակարգեաց զգովասանութիւն սրբոյ խաչին և երկրպագեալ 'ի վերայ երեսաց բիւրոց սրբոյ խաչին, և երկըրպագեալ Թագաւորին և ամենայն ժողովոյն, էջ յամբիոնէն. և առ հասարակ ժողովն զովէին և բարեբանէին զԴաւիթ, և ձայնէին Անյաղթ փիլիսոփայ. և օրհնէին զտուօղն այնպիսի շնորհաց։ Յայսմ ժամանակի կամեցան ելանել յաշխարհն Հայոց հանդերձ թարգմանեալ գրենօքն, և առեալ աղօթս յեկեղեցւոյն և 'ի Թագաւորէն։ իսկ Թագաւորն տուեալ նոցա պարգեւս երեւելիս և մասն 'ի սրբոյ խաչէն. և ելեալ յերեսաց Թագաւորին գնացին յաշխարհն Հայոց։

Ահա ծագեցան արեգակունքն յարևմտից յարևելս, ունելով զլոյս գերապանց 'ի շրթունս իւրեանց ։ Ահա ծագեցան փողքն հնչողականք աթենական նահանգէն ; ունելով 'ի բերան փողոցն շունչս կենդանականս ։ Ահա' գալով գան վաճառականք բարձեալ նաւըս ակունս պատուականս և մարգարիտս գեղեցիկս՝ բերել կամելով Հայոց աշխարհին ։ Ահա' արեւմուտք նոր իրս կամի գործել . զի ուղտն որ 'ի բազում ժամանակաց անհոգացեալ նստէր և որոճայր զորոճն կենաց՝ գայր բերէր զանձս Հայաստանեայցս ։ Ահա' լուծք եզանց ամոլք լծեալք յանիւ երկնաբարձ՝ 'ի բերել զաստեղս լուսեղէնս ։ Ահա' արեւելք հայեցաւ , և զոր ոչն ունէր էառ .

արեւմուտք՝ զոր ունէր կորոյս : Թէնէր արեւմուտք և չունէր արեւելք . ունի արեւելք և չունի արեւմուտք : Զայն տայ արեւելք և առնէ արեւմտից . ահա՛ զոր ունէիր՝ ձեռն առեալ և ձեռն՝ յաշխարհիս մերում զձեռն կենաց :

Արդ արեգակնակերպն այն Մովսէս և Դաւիթ եղեալ յաշխարհն Հայոց , տեսանելով աւերեալ և քանդեալ զվայելուչ աշխարհն իւրեանց , յիշելով զկորուստ զօրացն Հայոց յանօրէն Յազկերտէն . լային և զմահ վարդապետացն իւրեանց . լային լալով և նստէին միաբանութեալ . և ոչ ոք էր որ մխիթարէր զնոսա : Մխիթարիչքն և պարծանքն Հայոց ազգին ահա միաբանութեալ

նստէին ։ Ահա՛ հնչողական փողքն՝ և ոչ ոք էր որ հարկանէր զձայն բարբառոյն քաղցր ։ Ահա՛ լոյսն՝ և 'ի խաւարի նստէին տեսողքն ։ Իբրեւ զայս ամենայն կատարած տեսեալ Մովսէս և Դաւիթ , ոչ կամելով յայտնել զինքեանս աշխարհին Հայոց . այլ գաղտ 'ի ծածուկ կամելով կեալ ։ Զի էին աթենականքն ծերացեալ և էր աշխարհն Հայոց աւերեալ ։ Իսկ Դաւիթ յայտնի կացեալ յաշխարհին Հայոց , և Մովսէս ծածկէր զինքն կարկառուն զգեստով և գծուծ կերպարանօք գնացեալ 'ի գեղ մի 'ի քաղաքադաշտին և կացեալ անդ որպէս մուրացիկ և ոչ ոք էր որ ճանաչէր զնա . Իսկ Դաւիթ և Մամբրէ , և Պօղոս և Աբրահամ , ընկերք

Մովսէսին կացին յերեւանի ։ Եւ
էր 'ի ժամանակին յայնմիկ կաթո-
ղիկոս Հայոց Տ. Գիւտ աշակեր-
տակից Մովսէսի ։ Արդ ոչ զբօ-
վանդակ զվարսն ասասցուք , այլ
զբազումս թողլով զվարս ճգնու-
թեան նոցա ։ Եւ ծրաբին խնդիր
Մովսէսի ընդ ամենայն աշխարհն
Հայոց և ոչ գտին զնա . և կա-
թուղիկոսն և եպիսկոպոսունքն
և իշխանքն առ հասարակ ունէին
սուգ. ոչ սակաւ վասն ոչ գտա-
նելոյ զնա ։ Իսկ հայրապետն Գիւտ
ելեալ հաստատէր զկարգս եկե-
ղեցւոյ աշխարհին Հայոց . և
հաստատեաց զաթոռ իւր 'ի Դը-
վին քաղաքի ։ Իսկ 'ի շրջելն իւ-
րում եկեալ 'ի գեղն յայն՝ յոր
էր թաղուցեալ անթագչելի
գանձն և անօթն , ամանն լուսոյ՝

Մովսէս, և երեւալ ընդ առաջ նորա առ հասարակ ծեր և տղայ, և բերեալ ինքուցին դհայրապետն 'ի տեղի պատուական, և արարին ուրախութիւն մեծ զօրն զայն. և 'ի գինարբուս նկսեալ իշխանքն և քահանայքն առաջի հայրապետին, նստեալ էր և Մովսէս 'ի բազմականին, և ոչ ոք ճանաչէր զնա՝ բաց յաշակերտէն. և սկըսան ուրախ լինել. և մի առ մի յարուցեալ երգէին երգ առաջի հայրապետին: Իսկ մի ումն ասէ ցնա. Ով պատուական ծեր, ասա՛ բան ինչ շնորհաց հայրապետիս: Իսկ նա արտասուեալ և ասէ. Զատարական եմ. և նա համբուրէր զպարս նորա: Իսկ յի-շեաց Մովսէս զբան փրկչին, թէ ոչ կարէ ոք լուցանել զճրագ և

դնել զմահճօք, այլ 'ի վերայ աշ-
տանակի զի լոյս տացէ ։ Եւ յա-
րուցեալ եկաց առաջի հայրա-
պետին, և սկսեալ բանս երա-
ժըշտականս այսպէս· «Ո՛վ Արքա-
յակերպ, Տէր, Քահանայապետ,
Սուրբ, և Հովուապետ բարի,
որ երկնայնոց նմանեալ . . . »
և որ 'ի կարգին ասացեալ երիս
տունս ։ Իսկ հայրապետն և բազ-
մականքն հիացեալ և սկսան քըն-
նել զնա. և աշակերտ նորին
յառաջ անցեալ և ասէ. Ո՛վ
սուրբ հայրապետ, այս է կո-
րուսեալն 'ի ձէնջ Աթենացին Մով-
սէս՝ աշակերտ սուրբ հարցն Սա-
հակայ և Մեսրովպայ ։ Իսկ որ-
պէս 'ի քնոյ ընդոստուցեալ հայ-
րապետն և արտասուօք ձայնեալ,
Ո՛վ արուեստականս ձայնս, ո՞վ

տայր ինձ տեսանել զնա ։ Եւ ոչ կարաց ճանաչել զնա , զի էին Լ· ամք որ հեռացեալ էր 'ի նոցանէ յաշխարհն հեռի ։ Եւ ասէր աշակերտոն · Արդարութեամբ ասեմ , Այս է ծերացեալն Մովսէս ։ Եւ յարուցեալ հայրապետն լալով համբուրէր զսուրբ երես նորա և զալիս ։ Եւ նստեալ լային զատուաջ իսկ այն անցեալ նեղութիւնն ։ Եւ դարձեալ ուրախանային ուրախութեամբ մեծաւ ։ Եւ եղեւ օրն այն մեծ և երեւելի · և ձեռնադրեաց հայրապետն զՄովսէս արք եպիսկոպոս · և ընթանային աշխարհն ամենայն 'ի տեսիլ Մովսէսի ։ Եկին և Դաւիթ և ընկերքն իւր , և ուրախ լինէին առաւել քան զառաւել · և խնդրեցին 'ի Մովսիսէ գրով տալ

նոցա զպատմութիւն Հայոց։ Իսկ նա սկսեալ գրէր զպատմութեան Հայոց պատմագիրն, և այլ բազում ինչ արար քննութիւն այս այս ճառեալ՝ 'ի անօրէնութիւն Փրկչին. և բազում ինչ արար, և զքերականին մեկնութիւնն. և արարին և զեղանակս երաժշտականացն ձայնաւորս բազումս, 'ի պէտս եկեղեցւոյ։ Այլ վասն խօսից վարդապետութեանց ոչ էր առ ուրեք, վասն դառն ժամանակին արար։ Եւ Դաւիթ գրեաց զսահմանացն գիրսն զոր էր առեալ 'ի փիլիսոփայիցն. արար և զմեկնութիւն քերականին։ Եւ ոչ ժամանեցին ելանել 'ի խաղաղական ժամանակի, զի զառացեալ և զամբարեալ զգանձն զայն որ 'ի վաղ

ժամանակաց 'ի յամանի պահեալ ունէին, զոր և ընդ իւրեանս տարան առ տուողն պարգեւացն, և ննջեցին բարեօք 'ի Քրիստոս։ Արար և Մամբրէ և Պօղոս և Աբրահամ ճառս ոչ սակաւս պէս պէս խորհրդոց։ Եւ յետ բազում ժամանակաց գրեաց զգիրս զայս (1), իբրև Աստուած հասոյց

(1) Ո՞ արդեօք, Մամբրէն։ Եւ 'ի տօթրեւն ո՞ այնը իցէ Պաշտպանութարն. և թէ զի՞նչ նշանակեն բանքն որ զէնք և որ կանխագոյն իցեն շարեալք. Թուի թէ բառ կամ բան ինչ պակասի, որով և իմաստն անպարզ մնայ. որպէս և տեսանի 'ի տեղիս տեղիս եւս յայսմ շարադրութեան. Այլ մեք ոչ ինչ 'ի մէնջ յաւելաք, թողեալ հարազատ ըստ նախնական գաղափարին. միայն զյայտնի վրիպակս տառից ուղղեցաք ուրեք ուրեք։

զմեզ 'ի ժամանակս այս , յորում Հ. և Զ. էր Թուականն Հայոց ։ Եւ Գուրգէն քարտուղարս Հայոց մեծաց և սուրբ Թագաւորացն Պռոյսպաթար ստացող եղէ գրո-ցըս այսմ ։ Բայց զարմանալի է 'ի նախկի յիշատակի գրոցս այսմիկ, Եթէ գրեցաւ գիրքս այս էակքս՝ հրամանաւ Թարգմանեալ 'ի Յու-նաց 'ի Հայս Տեառն Յովհաննիսի Հայոց կաթուղիկոսի Գաբեղե-նեցւոյ 'ի ԽԷ. Թուականին Հայոց։ Վկայէ՛ այսմիկ Սարգիս Արարա-ցի եպիսկոպոս ճշմարիտ վկայու-թեամբ ։ Օրհնութիւն և զովու-թիւն և փառք և պատիւ Հօր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյն այժմ և միշտ ։

( Ի նոյն ժամաքէնէ )

## ՆԱՀԱՊԵՏՔ, ԹԱԳԱՒՈՐՔ, ԵՒ ԻՇԽԱՆՔ ՀԱՅՈՑ

Արդ՝ Նոյի անդրանկին Յաբեթ՝ ծնաւ զԳամեր։ Գամեր ծնաւ զԹիրաս։ Թիրաս ծնաւ զԹորգոմ։ Թորգոմ ծնաւ զՀայկ։ Հայկ ծնաւ զԱրմենակ։ Արմենակ ծնաւ զԱրամայիս։ Արամայիս ծնաւ զԱմասիա։ Ամասիա ծնաւ զԳեղամ։ Գեղամ ծնաւ զՀարմա։ Հարմա ծնաւ զԱրամ։

Առաջին թագաւոր Հայոց Արշակ քաջ Պարթեւական, զկնի թագաւորէ Արտաշէս որդի նորա։

Երկրորդ թագաւոր Արշակունի՝ Արշակ որդի Վաղարշակայ։

Երրորդ Թագաւոր Հայոց Արտաշէս՝ որդի Արշակայ։

Չորրորդ Թագաւոր Հայոց Տիգրան՝ որդի Արտաշէսի։

Հինգերորդ Թագաւոր Հայոց Արտաւազդ՝ որդի Տիգրանայ։

Վեցերորդ Թագաւոր Հայոց Արամ՝ որդի Արտաւազդայ։

Եօթներորդ Թագաւոր Հայոց Արգամ՝ որ և Աւագ այր կոչի։

Ութերորդ Թագաւոր Հայոց Սանատրուկ՝ քեռորդին Աբգարու։

Իններորդ Թագաւոր Հայոց Արշակունի ազգաւ եղեւ Երուանդ։

Տասներորդ Թագաւոր Հայոց Արտաշէս՝ որդի Սանատրկոյ։

ԺԱ. Թագաւոր Հայոց Արտաւազդ՝ որդի Արտաշէսի։

ԺԲ. Տիրան եղբայր Արտաւազդայ ։

ԺԳ. Տիգրան վերջին եղբայր Տիրանայ ։

ԺԴ. Վաղարշակ Բ. որդի Տիգրանայ ։

ԺԵ. Թագաւոր Խոսրով՝ որդի Վաղարշայ հայրն Տրդատայ ։

ԺԶ. Թագաւոր Հայոց Տրդատ՝ որդի Խոսրովու ։

ԺԷ. Թագաւոր Հայոց Խոսրով որդի Տրդատայ ։

ԺԸ. Թագաւոր Հայոց Տիրան՝ որդի Խոսրովու երկրորդի ։

ԺԹ. Թագաւոր Հայոց Արշակ՝ որդի Տիրանայ ։

Ի. Թագաւոր Հայոց Պապ՝ որդի Արշակայ ։

ԻԱ. Թագաւոր Հայոց Վարազդատ՝ ազգաւ Արշակունի ։

ԻԲ. Թագաւոր Հայոց Արշակ և Վաղարշակ՝ որդիքն Պապայ Արքային :

ԻԳ. Թագաւոր Հայոց Վռամ-շապուհ՝ եղբայր Խոսրովու :

ԻԴ. Թագաւոր Հայոց Արտա-շէս՝ որդի Վռամշապհոյ :

Յաղագս թէ զինչ քառասնալոյ Թագա-ւորութեան Արշակունեաց ո՞յք եղեն տէրողք Աշխէս Հայոց, շարոց շան-տանան յէշեմք :

Յետ Արտաշրի Թագաւորի՝ Սպարապետ Հայոց եղեւ Վար-դան, որդի Համազասպայ՝ Թոռն սրբոյն Իսահակայ 'ի դստերէ նո-րա Շուշանայ : Սա պայազատեաց զամս Ը. եկեաց Մարզպանեան Հա-յոց 'ի փոքուն Թէոդոսէ և Հաւա-

տատեցաւ 'ի Վռամայ Պարսից արքայէ ։ Սա աստուածային սիրովն լցեալ՝ սատակեաց զուրացողն հաւատոյ զիշխանն Հայոց ։ Սպան զանօրէնն Շաւասպ Արծրունի, և փախստական արար զմարզպանն Միհրան ։ Ջերբաշխալ արար զալիղծն վնոտոյ և կենդանւոյն այրեաց զնա յատրուշանի կրակին 'ի Դվին․ և զորդի նորա Շիրոյ՝ 'ի վերայ բագնին կախեաց զփայտէ․ և 'ի տեղի բագնին շինեաց եկեղեցի յանուն սրբոյն Գրիգորի ։ Սա ընդ ընկերացն զօրավարաց վասն 'ի Քրիստոս հաւատոյն կատարեցաւ վկայական մահուամբ 'ի մեծ ապատերազմին ։

Երկրորդ՝ եղեւ Վահան Մամիկոնեան Հայոց որդի Հմայեկի եղ-

բօրոզքի սրբոյն վարդանայ :

Սա յաւուրս սրբոյն Ցօհաննու Մանդակունւոյ՝ յաղթեաց քաջապէս ամենայն եկեղեցն ՚ի վերայ իւր :

Կացուցանէր մարզպան ՚ի վերայ Պարսից թագաւորէն, և չինէ զբաղումս եկեղեցիս · տիրէ ազգիս Հայոց զամս իը · փախճանի բարի անուամբ :

Պարոն վ՛արդ՝ եղբայր քաջին վահանայ՝ եկաց ՚ի մարզպանութեան զամս երեք · սա ապստամբեալ ՚ի խոսրովու Պարսից արքայէն՝ սպան զմարզպանն Սուրէն ՚ի Դվինն քաղաքին, և ինքն հանդերձ այլովք նախարարօք չոգաւ ՚ի ծառայութիւն Ցունաց · և ըզ չարխանձիսն Պարսից եկեալ ՚ի վերայ իւր մաշեաց ՚ի սուր սու-

ների ։ Պարոն Դաւիթ Մորաստե-
լատ և զօրաւոր Հայոց տիրեաց
յաշխարհիս Հայոց ՚ի ժամանակս
Հերակլի կայսեր զամս երեսուն ։

Պարոն Թէոդոս ՚ի Ռշտունեաց՝
իշխեաց ամս ԻԵ ․ էր քաջեպաշտ
իշխան ՚ի ժամանակս Եզրի կա-
թուղիկոսի ։ Սա զօրավար պա-
տուեալ ՚ի կայսերէն Յունաց ,
դիմակալ եղեւ Հագարացւոց
և հիւսիսական ազգին Հոնաց ։
Պարոն Համազասպ մեծ իշխանաց
իշխան , տիրեաց ամս եօթն , յոյժ
ընթերցասէր և վարժ յամենայն
հրահանգս արհեստից ։

Պարոն Աշոտ առաջին Թագա-
ւոր յԱնի ՚ի Բագրատունեաց ազ-
գէ՝ որդի Սմբատայ սպարապետի
Հայոց։ Այր հսկայաձեւ անձնեայ
և թիկնաւէտ , զուարթերես ,

մեծախմաստ և քաղցրաբան․ որ յետ վախճանի հօրն՝ կացեալ յիշխանութեան իշխան Հայոց ամս ԼԱ․ ապա օծաւ թագաւոր․ և հինգ ամ թագաւորեաց յԱնի, ընկալեալ զթագ յերկուց թագաւորաց, յիսմայէլացւոց և Յունաց։ Արար քաջութիւնս բազումս, և երեւելապէս չքեղացոյց զկարգ աշխարհիս Հայոց․ և հնազանդեցոյց զբազումս ազգս հիւսիսականաց ընդ իւրեւ։

Սմբատ որդի Աշոտայ թագաւորեաց ամս ԻԴ։ Էր յոյժ իմաստուն և բարեպաշտ․ արար բազում քաջութիւնս, և սպառուեցաւ յերկուց թագաւորաց, Յունաց և Իսմայէլացւոց։ Եւ յետոյ դաւով ըմբռնեցաւ յոստիկանէն Տաճկաց․ և դառն տանջանօք ընդ

առնացի անդամս եղէդն մկեց-մամբ՝ վասն 'ի Քրիստոս հաւատոցն մկայական մահուամբ կատարեցաւ 'ի Դվինն քաղաքի ։

Աշոտ որդի Սմբատայ, Թագաւորեաց ամս ԻԵ ։ Սա պատուեցաւ 'ի կոստանդին կայսերէն Յունաց, և բազում մարտ պատերազմի մղեալ քաջութեամբ, յինքն գրաւեաց զաշխարհն Հայրենի, և կոչեցաւ Շահնշահ ։

Աբաս որդի Սմբատայ Թագաւորեաց ամս քսան և չորս 'ի յԱնի ։

Աշոտ որդի Աբասայ Թագաւորեաց յԱնի՝ ԻԷ ։

Սա՝ ՁՌ զօրօք օգնական լեալ Յօհաննու Զմշկիկ կայսերն Յունաց, մեծապէս փառաւորեցաւ

'ի Նմանէ ։ Իւ նոյն Յօհաննէս Չմշկիկն էր ազգաւ Հայ՝ յՆերապօլիս քաղաքէ, որ այժմ ասի Չմշկածագ ։

Սմբատ Շահնշահ որդի Աշոտոյ՝ թագաւորեաց ամս ԺԳ ։

Սա էր եղբայր Գագկայ, և թագաւորեաց յԱնի ։

Գագիկ եղբայր Սմբատայ թագաւորեաց ամս ԼԶ ։

Սա եհար զզօրս Պարսից և ձերբակալ արար զօրավար նոցա. և յետոյ հարկեալ ետ զքաղաքն Անի կայսերն Յունաց, և ինքն գնացեալ բնակեցաւ 'ի Կապադովկիայ. և անդ դաւով սպանաւ 'ի Յունաց ։

Գագիկ երկրորդ՝ յամենայն տեսակս իմաստութեան վարժ և կիրթ էր. և քեր զախոյեան

ընդդիմանայր ամենից յառաջ-
կելն և 'ի պատասխանելն աս-
տուածաբանութեամբ և փիլի-
սոփայութեամբ ։ մինչ զի յոր-
ժամ դիպէր 'ի կաճառս վարդա-
պետաց, լուէին ամենեքեան սոս-
կալով, և յոտին կանգնելով ա-
ռէին, Թէ լուռ կացէք վարդա-
պետն եկաւ ։

Էր սա որդի Աբասայ Շահնշա-
հի՝ որ Թագաւորեաց 'ի Կարս
քաղաքի ։ Եւ երբ որ Աբօլան
սուլթանն Պարսից յետ հարկա-
նելոյ զԱնի՝ եկն 'ի վերայ սորա
և կոչեաց յերկրպագութիւն իւր ,
հնարս խորհեցաւ զերծանիլ 'ի
խամ Թէքլիֆէն , վասն որոյ զգե-
ցաւ սեաւ զգեստ և նստաւ 'ի
վերայ սեաւ բարձի ։ Եհարց հրա-
ւիրակն զպատճառ սգոյ կերպին ,

նա առաց թէ ; Յորմէ հետէ մե-
ռաւ բարեկամն իմ Տուղրիլ եղ-
բայրն Արօլանայ՝ զգեցայ զգեստ
զայս ։ Հիացաւ հրաւիրակն և չո-
գաւ պատմեաց սուլթանին ․ և
նա եկն առ Գագիկ ամենայն
բանակաւն 'ի Կարս, և զգեցոյց
նմա զգեստ թագաւորական ։

Իսկ յետ աւուրց եթող Գա-
գիկ զԿարս 'ի ձեռս կայսերն
Յունաց, և էառ փոխանակ նորա
զբերդն Ծամընդու․ և անդ բնա-
կեցաւ ։ . .

Յօհաննէս և Աշոտ և որդիք
Գագկայ թագաւորին Անւոյ
թագաւորեցին ամս ԾԷ ։

Յօհաննէս էր այր ամենայն
գիտութեամբ ճոխ, յամենայն
իրս նախահոգակ, հեզ և բարե-
վարուք ։ Իսկ Աշոտ էր սրտեայ,

և առիւծաբարոյ. մինչ զի զար-
քայն վրաց զզօրահաւորն՝ միով
հարուածք ընդ երկուս ճեղքեաց։
Արքայս այս (զուցէ Ռոքալոս)
խամելով միահեծան թագաւորել,
ոչ շատանալով վասպուրականն
դշխաւորքն, ապականէր զգաւա-
ռըն Անւոյ։ Եւ Յօհաննէս որ
խաղաղասէր էր, զբոլոր գաւառն
Նախն եւս, և ինքն զատօրեայ
կեանքն անցոյց յԱնի։

Բուրքէն ազգականն Գագկայ
Թագաւորեաց ամս ի։ Սա էր
այր քաջ և սրտեայ. 'ի թուին
Հայոց ՆԾԻԵ։ Որ զօրացեալ նախ-
չառ զամիրայն կոտայառայ, որ
'ի Ակնիկիւայ. և ապա ել 'ի լեառն
Ցզրոս, (որ է երկայնանիստ և
հառանցիանդրն հասու մինչև 'ի Հրե-
դինս՝ յերկուս բաժանելով զԱ.

սիայ) և անուն իշխան էառ զերու-նայրն կողմանս Փռիւգիոյ Այոնիլու, 'ի բաց վանելով զՅոյնս 'ի վրէժխնդրութիւն արեանն Գագկայ ։ Ի սմանէ սերեալ թագաւորքն 'ի Կիլիկիայ թագաւորեալք կոչեցան Ռուբէնեանք ։

## ԹԱԳԱՒՈՐՔ ԿԻԼԻԿԵՑԻՈՑ

Կոստանդին որդի Ռուբէնի թագաւորեաց ամս Ե ։ Սա կալաւ զդղեակն Վահկայ, և անդ հաստատեաց զթագաւորութիւն 'ի ստորոտ Տօրոս լերին ․ սա արար սաստիկ պատերազմունս և ընդարձակեաց զթագաւորութիւն 'ի Կիլիկիայ ։ Թորոս որդի Կոստանդեայ թագաւորեաց ամս Ի ։ Սա էառ զվրէժ արեանն Գագկայ, զի էառ զբերդն Կոնդ-

թուականիս և կործանեալ գնա. և վասն մեծամեծ քաջութեանց նորա զաւառն Կիլիկեցւոց կոչեցաւ յանուն նորա՝ երկիր Թորոսի ։ Լեւոն եղբայր Թորոսի թագաւորեաց ամս ԺԵ ։ Սա էառ զՄամեստիա և զայլ քաղաքս Կիլիկեցւոց. էառ և զԱզազ քաղաք Ասորւոց ՚ի Տաճկաց. և տիրեաց ամս ԺԵ ։ Եւ վասն քաջութեանն կոչէին զնա՝ Նոր Աժդահակ. և յետոյ կալանաւորեալ եղեւ ՚ի կայսերէն Յունաց երկու որդւովքն Ռուբինաւ. և Թորոսիւ ։

Թորոս որդի Լեւոնի զերծեալ ՚ի կալանաց յետ մահուանն փէրփէրուժէն կայսերն՝ եկն ՚ի Կիլիկիայ և ժողովեաց սա ինքն զամենայն իշխանս Հայոց, և վերըստին յինքն կորզեաց զԿիլի-

կիա , և եա պատերազմ ընդ Մանուէլ նոցա , և յետոյ հաշտութիւն արարեալ յոյժ պատուեցաւ 'ի կայսերէն ։ Սա երկիցս յաղթեաց Իկոնիոյ սուլթանին ։ Պարոն Մլեհ եղբայր Թորոսի թագաւորեաց ամս Է ։ Պարոն Ռուբէն որդի Ստեփանեայ թագաւորեաց ամս ԺԲ ։ Սա խաբկանօք ըմբռնեալ յիշխանէն Անտիոքայ բանտարկաւ , և ապա ազատեալ դարձաւ 'ի Կիլիկիա , և արար բազում բարութիւնս , և կրօնաւորեալ մեռաւ 'ի մէջ կրօնաւորութեան ։

Լևոն եղբայր Ռուբէնի առաջին թագաւոր Կիլիկեցւոց թագաւորեաց ամս ԼԵ ։ Սա վերստին հաս 'ի Կիլիկիա · սա եւ ընդդէմ Ռուստեմայ սուլթանին , և եհար

զանհամար զօրս նորա ։ Էառ և զՍամվրիայ ։ Եւ վասն բազմաց քաջութեանցն՝ եղեւ առաջինն 'ի տոհմէ Ռուբինեանց, որ ընկալաւ զթագ յինքնակալէն Ալամանաց և 'ի կայսերէն Յունաց, և օծաւ թագաւոր Հայոց 'ի Կիլիկիա, 'ի թուին Հայոց ՁՃԽԶ ։

Ֆիլիպ փեսայ Լեւոնի և որդի բրնծին Անտիոքայ՝ թագաւորեաց ամս երեք. որոյ կին էր Զապէլ դշխոյն, որ յետոյ եղեւ կին Հեթմայ որդւոյ Կոստանդեայ ։

Հեթում փեսայ Լեւոնի դստերէ Ֆիլիպին ծնեալ՝ թագաւորեաց ամս ԽԵ ։ Սա գնաց առ Մանկո խանն Թաթարաց խաթայի, և դարձոյց զնա 'ի հաւատս Քրիստոսի. և ընկալեալ 'ի նմանէ ըզ խնդրուածս իւր՝ փառօք դարձաւ

'ի Հայս . և էառ զԳերմանիկ և Պէհեսդին ։ Եւ մինչ էր նա յերկիրն մեծ խանին, եւ սուլթանն Եգիպտոսի էառ զԱսորիս . և մեռեալ 'ի Կիլիկէ գերեաց զԼեւոն որդին Հեթմայ ։ Զոր թափեալ Հեթմայ եհան Եգիպտոսէ և թագաւորեցոյց փոխան իւր, և ինքն կրօնաւորեալ Մակար կոչեցեալ՝ մեռաւ կրօնաւորայէս ։ Լեւոն որդի Հեթմայ թագաւորեաց ամս ժԲ ։ Այս Լեւոն առատաձեռն էր և առաքինի վարուք, անյիշաչար և սիրելի ամենեցուն ։ Շինեաց զբազում ուսումնարանս վարդապետաց, և ուսուցէր զուսումնասէրսն, և վասն քաջութեան իւրոյ սպառուեցաւ 'ի Թաթարաց ։ Հեթում մեծ որդին Լեւոնի թագաւորեաց ամս Ը ։

Ցեւսոյ կրօնաւորեալ 'ի կարգի սրբոյն Ֆրանչիսկոսի՝ կոչեցաւ Յօ՞աննէս . և ոչ կամէր դնել թագ 'ի գլուխ իւր ղամս ութն ։ Եւ կուրացեալ յեղբօրէ իւրմէ Սմբատայ՝ վերստին յԱստուծոյ ընկալաւ զտեսութիւն . և անդրէն կալաւ զթագաւորութիւն ամս երկու ։

Եւ միաբանեալ ընդ Կոստանոսի կայսերն Թուխթարայ , եւ սատարիկ պատերազմ ընդ Թուրգումաց ։ Ետ Կոստանոսի կայսերն զդուստրն իւր և դարձոյց զնա 'ի հաւատս Քրիստոսի ։

Սա արար բազում երգս շարականաց սկզբնատառիւք անուան իւրոյ ։ (Սորա է և ոտանաւոր 'ի վերջն Ոսկանի Աստուածաշնչին ։) Օշին հօրեղբայր Լեւոնի Թագա-

ւորեաց ամս ՃԳ. 'ի սորա աւուրս եղեւ ընդհանրական ժողովն Ատանայ ։ Լեւոն որդի Օշնի Թագաւորեաց ամս երեք . 'ի սորա աւուրս եղեւ ժողովն Սսոյ ։ Որ յատենաբանեալն 'ի ժողովն սրբոյն Ներսէսի Լամբրոնացւոյ , սատարիկ Թանձ խոստուկի ընդունեալ մեռաւ 'ի տիս երիտասարդութեան ԼԳ. ամաց . զի այնպէս խնդրեալ էր յԱստուծոյ , թէ յորում պահու զտանիցիմ 'ի փրկաւէտ և 'ի հաճելի գործ ինչ քեզ ծառայութեան , ընկալցիս զհոգի իմ . և եղեւ այնպէս ։ Կոստանդին ազգական Լեւոնի որդի Պաղդնի Թագաւորեաց ամս եօթն ։

Պարոն Ճիւան Թագաւորեաց ամ մի ։ Սա էր հօրաքեռ որդի

Լեւոնի ։ (1) Կիտ եղբայր Ջիւանի Թագաւորեաց ամս երկու . զսա

---

(1) Իբրև ցանկ առ ձեռն ունելոյ զանուանս Հայ Նախահարց և տիրապետաց Հայաստանեայցս , հաւաքեալ այսօրինակ չգիտեմ յումմէ°, եդաք աստանօր , զհարազատութիւն անուանց և շարադրութիւն զնոյն պահեալ , առանց բաղդատելոյ և ուղղագրելոյ . եթէ իցէ ուրանել անուն ինչ կամ բառ 'ի ցանկիս յաւելեալ կամ պակաս կամ երբեք. Նոր , մի' ոք արհամարհեսցէ զգրածն , քանզի 'ի ձեռագիրս այսպիսիս պատահի բանասիրաց յուշ . տալ վասն բառին կամ անուանն՝ որ ըստ ոմանց սխալ թուի , բայց Նոր ինչ լոյս ածէ այն 'ի քննին և 'ի խոյզ մտանել հնութեանց , և գտանել Նոր անձն մի կամ հանգամանս պատմականս թափեալ և մոռացեալ 'ի մտաց Նախնի պատմողաց ։

Հրատարակիչն .

ընդ եղբօրն սպանելին Հայքն տի-րասէրք ԸՃ թուին։ Լեւոն վեր-ջին թագաւոր՝ թագաւորեաց ամս ԺԱ. և բարձաւ թագաւո-րութիւն Հայոց 'ի Կիլիկիոյ ԸՃԺԱ թուին Հայոց։

Օրինակեալ ՚ի ձեռագրէ ճառինէ Աս-
տուածաբանութեան Դիոնէսիոսի Արիս-
պագացւոյ անուանեալ․ ՚ի 1867 ամի․
՚ի Սուրբ Կարապետի վանս Մշոյ ։

*Թուղթ Դիոնէսիոսի Արիսպագացւոյ՝ առաջին եպիսկոպոսի Աթենացւոց քաղաքին ։ Զոր գրեաց նա պատասխանի թղթոյն Տիտոսի եպիսկոպոսին կրետացւոց, յաղագս ննջման սուրբ Աստուածածնին և միշտ կուսին Մարիամու ։*

*Ծանիցէ եղբայրութիւնդ քո ո՛վ վսեմական Տիտէ, քանզի ՚ի ժամանակի յորժամ հանդերձեալ էր ելանել յաշխարհէ և յաշխարհայնոցս, այս է՝ առ ՚ի*

յերկրաւորս Երուսաղէմէ , և մտանել 'ի խորանսն լուսոյ վերինն Երուսաղէմի . անմեկնելի հրաժարմամբ յաւերժապէս առ 'ի մէնջ , ըստ ներքին մարդոյն , սարփողական հոգւով սիրով Աստուածամայրն , յայնժամ դաս առաքելոցն սրբոց խոկ և խոկ ըստ ակնարկութեան 'ի բարձանց վսեմական կամաց Աստուածային հրամանէն համահաւաքեալ 'ի վայրկեան ժամանակի , առ 'ի բոլոր ազգաց՝ ուր էին միճակեալք առ 'ի քարոզութիւն Աւետարանին կենաց, գտան եկաւորեալ համագումար միաբանութեամբ 'ի սուրբսն արդարև , ըստ այնմ թէ , Ուր լուծումն մարմնոյ , անդ և արծուիքն ժողովեսցին . փարելով շուրջ զա-

մենավանեմ կուսական մարմնովն ։
Ուստի յայնժամ ապա յանդի-
ման երկոտասան ճառագայթ
Աստուածամուխ առաքելական
գնդիւն ։ Ի բոլոր չորջապատոյս ե-
կեղ սեռից հաւատացելոց սրբոց
դասուց հրաժարեալ յամենե-
ցունց , միջնորդութեամբ սրբա-
մատոյց և սրաթուիչ որ առ Աս-
տուած աղօթիւք մատուցեալ. 'ի
քարձունս զամենասուրբ և զան-
հայելի զձեռս իւր՝ հայելով յու-
սափափիազ անենչանօք առ որ
ձնեալն 'ի նմանէ Աստուած մեր
և որդի իւր , յուսով մեծաւ հա-
տոյց , որպէս խունկ անոյշ ա-
ւանդեալ զամենասուրբ հոգին
իւր 'ի ձեռս Տեառն . և այնպէս
պարագարդեալ առ 'ի հրեշտա-
կականն դասուց վերացաւ օր-

պէս զփայլակն 'ի գերարփի յա-
ւետախաղաց փառս վերինն Ե-
րուսաղէմի ։ Ուստի յայնժամ
տայս ողբերգական արտասուա-
թոր հառաչանօք մանաւանդ թէ
յուսապատար խնդութեամբ և
հրճուողական հնչմամբ սրբոցն
Առաքելոց և բոլորիցն պարա-
պտոյտ կեալ հաւատացելոցն յօ-
րինեալ, բարեպաշտապէս զմար-
մինն Աստուածընկալ ըստ օրինի
ննջեցելոցն , զկեցեալն 'ի վեր
քան զօրէնս հասարակաց հոգե-
շնորհ երգովք , և ծաղկազարդ-
վարդապետութեամբք զնոյն ա-
սել Աստուածաբանականն ար-
տաճառութեամբ ըստ պատշաճին
պիտոյից , և ձայնիւք սաղմոսաց ,
բարձեալ Առաքելոցն 'ի վերայ
Աստուածարեալ բազկացն իւրոց

ղմարմինն ամենասուրբ ստուգ ապէս զմայր լուսոյ և զգանձ՝ պատճառ անապական կենաց ազգի մարդկան, ըստ ակնարկութեան 'ի վերուստ հասարակաց փրկչին տորիչեալ վաղվաղակի հրացեալ Աստուածամուխ հրոյն կայծակմամբ եղեալ 'ի տեղւոջ կոչեցեալն Գեթսեմանի լսելով մինչեւ յերիս աւուրս 'ի վերայ Ամենասուրբ թաղմանն զսաղմոսերգութիւնս հրեշտակականս ձայնից, և այլ ոչ եւս։

Վասն որոյ 'ի հաւատարմութիւն այսոցիկ իրականութեանց գտաւ ոմն մի առ 'ի նոցունց իսկ առաքելոցն սրբոց՝ նուազեալ առ 'ի թուոց նոցա 'ի ժամանակի վուզահաւաքմանն. որոյ եկեալ յետոյ և բանագրօսեալ զԱռա-

քեալսն առ 'ի ցուցանել նմա ակն յայտնի զգանձն անկողոպտելի, զմարմինն փսեմական ամենօրհնեալ կուսին, հարկաւորեալ յայնժամ լնուլ տարփումն եղբօրն. բացեալ զգերեզմանն գտին ունայն և թափուր առ 'ի սուրբ մարմնոյն. և յայնժամ զգացեալք անդուստ 'ի միտ առին, թէ յետ դադարելոյ հրեշտակական սաղմոսերգութեանցն փոխադրեալ եղև մարմինն սուրբ 'ի ձեռն նորին իսկ հրաբուն սեռից զօրացն համբարձեալ գերաշխարհնայինս, 'ի տեղի մեծարգի և լուսապայծառ փառաց. որ գիտէ ինքն միայն, որ հրաշիցն է Աստուած, ծածկեալ առ 'ի բոլոր զգայոյ աշխարհէն. Նմա փառք յաւիտեանս. ամէն:

## (1869 ՓԵՏՐՎԱՐ 10)

Յիշատակարանս 'ի յիշատակի Ձայնընտիրն ընծայեցաւ 'ի Ս. Կարապետ Մշոյ:

Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. որ ետ կարողութիւն անզօր անձին Թադէոսի՝ հասանել յաւարտ երկնաշնորհ գրոցս որ կոչի Ձայնընտիր. 'ի ՌԳՁ Թըւականիս, որ է տանուտէր Ջըրհոյն, 'ի դիւղաքաղաքս Բաղու, ընդ հովանեաւ Լուսաւորչի 'ի դառն և 'ի նուրբ ժամանակի: Որ այլազգիքն զօրացեալ են 'ի վերայ մեր վասն մեղաց մերոց

Եւ անուղղայ գնացիցս մատնեալ է զմեզ Աստուած 'ի ձեռս նոցա ։ Եւ դարձեալ մխիթարիչ լինի մեզ սուրբ Հոգին, թէ մի՛ տրտմիք, զի տրտմութիւն ձեր յուրախութիւն փոխեսցի ։

Ի խնդրոյ պատուականն և սրբասէր Կարապետ վարդապետի որ ստացաւ զգիրքս 'ի յարդար ընչից իւրոց՝ յիշատակ բարի հոգւոյ իւրոյ և ծնողաց իւրոց ։

Արդ որք հանդիպիք վարդապետիս բուրաստանիս՝ ընթեռնլով և օգտելով, յիշեսջիք յաղօթս ձեր զվերոյասացեալ զԿ. վարդապետն և զծնողսն իւր զԱռաքելն և զՆշխարբէթն և զամենայն արեան մերձաւորսն և զհոգեւոր հայրն զՄարտիրոս վարդապետն, և 'ի բերանով· և

ուղիղ սրտիւ Աստուած ողորմի ասացէք, և մեղաց թողութիւն խնդրեցէք: Այլ և աղաչեմ, միով Աստուած ողորմիւ և զիս զմեղուցեալ Թադէոս գծողս յիշել, և զծնողսն իմ զկարապետ երէցն, որ խիստ ջանաց 'ի հետ թղթիս 'ի ճզելն և 'ի կոկելն, և զմայրն իմ զՄարգարիտ՝ որ օր աւուր պատրաստէր զկերակրիկն իմ, և զմեծ հայրն իմ զՏէր Յովհաննէսն, որ 'ի ՌՂԴ· թուականին փոխեցաւ առ Քրիստոս, և կաղակիցն իւր. և զամենայն արեան մերձաւորսն իմ: Դարձեալ կրկին անգամ աղաչեմ զձեզ հարք և եղբարք, յորժամ ընթեռնուք յիշեցէք 'ի Քրիստոս զվարպետն իմ զխաչատուր սարկաւագն:

Ի ՌԼԷ· թուականին եղեւ օր-

հաւէրբ 'ի բազում տեղիս, և
կոտորեցաւ ազգն Ցանկաց : Զի
յաշխարհն Զաղաթային բազում
պատերազմունք, և արեան հե-
ղումն եղեւ : Եւ Մորայ Սուլդանն
և Հոռոմոց խոնդքարն՝ զմիմեանս
ջարդեցին և կոտորեցին : Եւ
մեծ Սօֆի Արտաւէլ քաղաքին,
ժողովեաց թղթով իւրով զա-
մենայն սօֆիսն իւր յամենայն
երկրէ : Զի էր սահմանք և սո-
վորութիւն նոցա՝ որ յամենայն
ամի փութային 'ի կոչն նորա
յամենայն աշխարհէ . կարմրա-
գտակ Սօֆիքն, և զինուորէին
նմա իւրեանց թոշակօքն, և փո-
խանակ տանելոյ 'ի նմանէ՝ ին-
քեանք տային նմա բազում ոսկի
և արծաթ : Եւ յամենայն պա-
տերազմունս ընդ որ երթայր՝

յաժարութեամբ կուռէին և մե-
ռանէին առաջի Նորա . որ և ես
հիացեալ եմ և հիանամ ընդ
այնպիսի միամտութիւնն ։ Զի
սքանչելեօք համբաւէին զանուն
Նորա , եթէ ցամաք ոտիւք ան-
ցանէ 'ի վերայ գետոց , և թաղ-
սեալ կացնաւ իւրով կտրէ զքար
և զերկաթ և զամենայն ինչ . որ
ժողովեաց յայսմ ամի իբրև քա-
ռասուն հազար այրս , և գնա-
ցեալ խաբէութեամբ եմուտ 'ի
Շամախի . և զամենեսեան որ 'ի
ձեռն էած 'ի Քրիստոնէից և 'ի
Տաճկաց , զարս և զկանայս սրով
կոտորեաց . և զքաղաքն ամե-
նայն հրով այրեաց՝ կումաչօքն ,
և որ ինչ էր 'ի նմայ ։ Եւ զմանր
տղայքն ետ ժողովել առ ինքն ,
և դիզեալ 'ի վերայ միմեանց ե.

և Զ. և ինքն հարեալ 'ի վերուստ Նիզակաւ՝ անցուցանէր մինչ 'ի Ներքին տղայն, և վերուցեալ Նիզակաւն կանգնէր. և տղայքն աղխողորմ թաւլկանային ոտիւք և ձեռօք 'ի ծայրս Նիզակացն, և Նա ծափս հարկանէր ուրախութեամբ և ասէր. Այս է ճըշմարիտ ղաղայն: Եւ զանասունսն զամենայն գծի, և գձորի, զուղտ և զոչխար՝ սրով կոտորեաց: Եւ այնպէս ոչ խնայեաց 'ի մարդ և յանասուն: Զոր դժոյժ արկեալ ամէրն Շամախու 'ի Թաւրէզ՝ առ փաշան փեսայն իւր Աղուպ, և ծանոյց Նմա: Եւ Նա յուղարկեաց զչէխանն մեծ Սուլէյման բազում զօրօք, որ գնացեալ ջանիւ մեծաւ մարտեան, և յաղթեալ կոտորեցին առ հասարակ

զամենեսեան ։ Եւ յինքեանց ևս շատք մեռան ։

Դարձեալ 'ի սոյն ամի, եղեւ Աստուածասաստ բարկութիւնն 'ի Սոփիսն կոտերոյ երկրին ։ Էր մօտ 'ի վանքն Ապարանից՝ գեօղ մի Սոփինոց Աղարուք անուն, և բազում նեղութիւնս անցուցանէին ընդ Աբեղայսն, և կղարէին հանապազ զջուրս վանացն, և ոչ տային թոյլ հանգչել նոցա ։ Եւ յաւուրս բուն բարեկենդանին, մի ոմն 'ի նոցանէ հարսանիս առնէր որդւոյ իւրոյ, և ամենեքեան ժողովեցան անդ, և արարին նմանութեամբ կատակ բազում ։ Եւ ապա բերեալ կողով մի եդին 'ի միջի իբր զսուրբ սեղան՝ և աղիւս մի 'ի վերայ որպէս զԱւետարան, և բերեալ սեաւ

Ջրով չըներ (չունէր)՝ և կացուցին չուրջանակի, և եդին անուանս նոցա զվարդապետացն, և զեպիսկոպոսացն, զոր ճանաչէին։ Իսկ Բ. այլևորքն՝ խրատ ետուն նոցա և ասեն. Մի՛ առնէք զայդպիսի կատակդ. այդ մեծ գունահ է ձեզ, որ զպեղծ չներդ 'ի սրբակաց ծառայքն Աստուծոյ կու նմանեցուցանէք։ Եւ նոքա ևս առաւել մոլեալ 'ի չարէն, և բերեալ զոմն կերպարանեցին սուտ մեռեալ՝ զի յետոյ յարուցանիցեն, և ոչ յարեաւ. այլ ղաւհաւատչեայն ընկալաւ զյաւիտենից մահուն։ Եւ ապա բերեալ բրդեալ հաց տային չանցն՝ յօրինակ հաղորդի։ Եւ նոյն ժամայն եղեւ Աստուածասաստ բարկութիւն 'ի վերայ նոցա, զի

եղեւ դղրդումն եւ ճայթումն ա- հագին, եւ յանհեղ որոտմանէն ամենեքեան սաստակեցան, որ 'ի տանն էին, բաց յԲ. ծերոցն։ Եւ եկեալ իշխանն Դերջնոյ ե- տես զահագին գործն եւ զար- հուրեցաւ. եւ սուր քարշեալ կա- մէր զՄնացեալսն ինքն կոտորել: Զոր ոչ ետուն Մոլնայքն թոյլ, վասն որոյ հանեալ զՄնացեալսն 'ի գեղջէն, եւ փոխանակ նոցա կացոյց քրիստոնեայս. եւ արար հայանոց 'ի փառս Քրիստոսի Ա- ստուծոյ մերոյ։ Եւ այսպիսի սքան- չելեօքս՝ հաստատեցան հաւա- տացեալքն առաւելապէս 'ի հա- ւատս ճշմարիտ.

Դարձեալ կրկին անգամ Ա- տուած ողորմի ասացէք կարա- պետ վարդապետին եւ ծնողացն

Առաքելին և Եղիսաբէթին և քուերն Մահտեսի Հռիփսիմին , և ամենայն արեան մերձաւորացն և հոգեւոր հօրն Մարտիրոս վարդապետին ։

որ կոչի սուրբ Յակոբ , յիշատակ և փրկութիւն հոգւոյ իմոյ · նաև ծնողաց իմոց Հայրապետին և Ռուստիանին , և պապին իմոյ Մարգարին և մամին իմոյ Խուն-ծուն · իսկ ամուսնոյն իմոյ Նազ-լուխանին , և չքեղազարդ որ-դւոց իմոց Սահակին և Զաքա-րիային , և հանգուցեալ որդւոց իմոց Ստեփանին և Նազարին , և դստերաց իմոց Փաթանին , Անիկամին և Մարգարտին : Եւ հանգուցեալ եղբօրն իմոյ Եստ-գար շահին , և քեռց իմոց Խուն-ծին , Փորոսին և Գուլուն · և հարսներանցն Մարիամանցն , և դեռաբուսիկ Թոռանցն Հայրա-պետին (որոց մի ամբողջ անցեր էր) և այլ ամենայն արեանառու մերձաւորաց իմոց · Ամէն :

տոյ 'ի գործ արկեալ մեծաւ տար-
փանօք և ստացաւ զանհամեմատ
փարթամութիւնս. և որ պահէն
մշտնջենաւորս. տալով ընդ ոգւոյ
յոլովութեան գանձուցս, և զան-
չափ յօժարութիւն ըղձից, և
ստացաւ զպատուական մարգա-
րիտս զայս 'ի վարժումն և 'ի
վայելս ներհուն և սրբազան ման-
կանց Սիոնի. և նորաբոյս ոս-
կերողբոյն Աստուածատուր հա-
րազատ ծիրանածին և բարե-
նշան զաւակացն, Սահակին և
Զաքարին, և հանգուցեալ որ-
դւոցն առ Քրիստոս՝ Սուքիասին
և Ղազարին։ Եւ Աստուածա-
պաշտ և երկիւղած և մեծա-
հաւատ ծնողաց իւրոց, պապին՝
Փչրուկ Մարգարին. և մամին՝
Խօնծին. և հօրն՝ մահդասի Հայ-

թասլետին · և մօրն՝ Ռուստիանէին , մեծայոյս և երկիւղազարդ ամուսնոյն իւրոյ Նազլու խանն» . . . (Նուագն հարկեալ առ) ։

Ի սկիզբն Թղթոց Պօղոսի Առաքելոյն գրեալ ։

« Ես փշրկենց խօջայ Մարգարէս կամաւ և յօժարութեամբ սրտիւ իմով ստացայ զայս Աստուածաշունչս ծաղկամիթիթ , և ետու գրել ոգւով ուրախութեամբ , և եդի 'ի դրունս սուրբ եկեղեցւոյս (տող մի ջնջեալ) և յիշատակ հոգւոյ իմոյ » ։

Ի վերջին երրորդ Թագաւորութեանց գրեալ ։

« Կարդացողք տառիս , յիշեցէք անարժան դծող սորին , մե-

ղաւոր է. աւարտեցաւ Աստուածաշունչս Թուին ՌՂԸ. ին, 'ի հայրապետութեան Տ. Տ. Փիլիպպոս կաթուղիկոսին, և թագաւորութեանն Պարսից փոքրիկ Շահարասին. և ստացաւ զսա խօջայ Մարգարայն Շռոսթեցի մականուն Փշրուկ (1). (չմերոյքեբեալ

(1) Շռոսթ է աւան առ քերան Սիւնեաց աշխարհին, և Փշրուկ Մարգար Խօջայն այր երևելի 'ի տոհմ և ընչեղ, որոյ սերունդ գայ յանգի յազնուական այրն' ծանօթն բազմաց ազգայնոց. Մ. Մաղաք աղայն Մարտունեանն, որ այժմ բնակէր 'ի Բանկալթի Ճաւայն Բեւրայի Կ. Գերագոյն Ջազգաբանութիւն այսմ տոհմի հրամանաւ Վեհ. Կաթողիկոսի Տ. Մատթէոսի 'ի գիր եհար Աղամ վարդապետեր Նիկողայեան' վանահայրն Ս. Թովմայի վանուց Ագուլեաց, 'ի 1860 թուականին, քաղեալ 'ի հանրական յիշատա.

անուանս կէնէ) ։ Հայր մեր որ յերկինս . Ծաղկեցաւ գիրքս 'ի յվաչարաւաշաղախ բանասիրէ » ։

Ի սկիզբն գրոց Եօթեքայ գրեալ ։

« Ծաղկեցաւ տառս Աստուածաշունչ Նուաստ տխեղծ Յովհան-

---

կութեանց երկրին բնիկ հայրենեաց նոցա , որք գտանին 'ի Շուոթ աւան և 'ի շրջակայս նորին՝ 'ի բանաւոր աւանդութեանց բնակչաց գաւառին , 'ի տապանագրաց և 'ի զանազան յիշատակագրոց ։ Ըստ տեղեկագրոյս յորմէ և բանքս կարդին , ազգաբանութիւն այսմ ցեղի՝ ցուցանի յարմատոյն Սիսակայ որդւոյն Գեղամայ Հայկազնւոյ սերեալ և ընդ դարս դարս Նախարար կացեալ տանն Սիւնեաց . որպէս և յաւուրս տիրապետութեան Պարսից պատուեալ Տանուտէրական իշխանութեամբ . 'ի նոյն տոհմէ Աղա Մուրատն Ղազարեան

Նէս բանի սպասաւորէ Շոռո-
թեցւոյ որդւոյ վարդան քահա-

---

Դիւանադպէգ էր Շահսէֆի Խոմայէլի Պարսից արքային՝ կարգեալ ՚ի վերայ քաղաքաց և աւանաց Սիւնեաց աշխարհին. որոյ որդին Փշրուկ հազարապետ ժառանգէ պատուոյ և պաշտօնի հօրն. և այսպէս անցանէր գայր յորդւոց յորդի հասուցեալ առ Աղա Աւետիք Զաքարեան Մուրատեանց։ Յաւուրս բռնակալութեան Թահմազ Ղուլի խանին վտարանդեալ ՚ի հայրենի տանէն Աւետիքն և եղբօրորդին իւր Աղա Ղազար Աւուտեան՝ հաստանեն հաստատուն զբնակութիւն իւրեանց ՚ի Կարս՝ յամին 1752. և անտի ՚ի Կ. Պոլիս հաստատեալ եկեալ բնակէ Աղա Ղազարն՝ յամին 1760։ Որդի սոյն Ղազարին՝ Մարտիրոս. որդի Մարտիրոսին՝ Առաքել. որդի Առաքելին՝ Գրիգոր քահանայ, և որդի Տ. Գրիգորին՝ Մ. Մաղաք Աղայն։

Իսկ վերոյիշեալ Աղա Աւետիքն Զ.

Հանայի. Թուին ՌՂԸ. Օգոստոսի Ի ։

---

Մուրատեանց 'ի խաղաղիլ երկրին դառնայ վերստին յիւր բնիկ գաւառն և տունն, վարելով զնոյն իշխանութիւն Տանուտէրականն, այն է Մելիքութիւն։

# ԴԱՄԲԱՐԱՆ

## Ս· ՍՈՒՔԻԱՍԱՆՑ

Ի հիւսիսային արեւելակողմն իննակնեան վանից սուրբ Կարապետին Մշոյ, յայնկոյս Քարկէոյ լերին, առ ստորոտով Թխնդէօլին 'ի Վարդօ, մերձ 'ի գիւղն հայաբնակ կողզէմիր, է գիւղ մի Ինալու անուանեալ, ուր բնակին ռայայ Քիւրդք երկրագործք։ Ի 1873 ամին, 'ի գարնան, Հայք կողզէմիրայ նախ գրով և ապա բերանացի ազդ արարին 'ի սուրբ կարապետի վանս, եթէ Քիւրդ ումն յԻնալու՝ 'ի պեղել զհիմունս շինութեան տան իւրոյ, երեւե-

ցաւ 'ի ներքոյ երկրին զերեզմանս խոր իբրեւ կանգունս երկուս , որոյ կափարիչ վէմն ունի քանդակեալ յերեսս տառս ·հայկականս ։ Եւ երկուք ոմանք 'ի կոնդէմիրցւոց իբրու ծանօթք պատմութեան , պնդէին թէ՝ իցէ այն գերեզման Սուքիասանց , յարմարաբանեալ զՍուկաւէտն՝ 'ի ծաղկաւէտ և ջրաբաշխ լեառն Բինգէօլի · և զոր ինչ գրէ պատմութիւնն վասն Սուքիասանց , ջան 'ի գործ արկանէին հաստատել զոր կարծէինն ։ Ընտրեցաւ Նշայի վարդապետ Ղեւոնդեանց 'ի միաբանութենէ վանուցն գնալ 'ի քննին իրացն · և տուեալ շրջապատել զայն շիրիմ քարակուտիւ և կաւապատով ,՝ վերադարձաւ

'ի վանս, ածեալ ընդ իւր զհե-
տեւեալ գիծս տառից որ 'ի վի-
մին, և զչափ և զորպէսն նորին,
զոր դնեմք աստանօր․ ոչինչ այլ
ինչ յաւելեալ 'ի մէնջ զարդիս․
թողլով քննող պատմագիտաց,
և հայրենագէտ ուսումնասիրաց
զննել թէ իցէ՞ այն տապան
արդարեւ Սուքիասանց, եթէ
այլոց ճգնաւորաց սրբոց, կամ
արանց ականաւորաց նահատա-
կաց առաքինեաց ։

«Սուքիասանց անուանեալ գե-
րեզմանս այս ունէր վէմ․ դամ-
բարանի մի և կէս, որոյ տեսակն
էր խճախառն որձաքար․ երկա-
յնութիւն վիմին՝ վեց թիզ և չորս
մատն, իսկ լայնութիւնն՝ թիզս
երիս ։ Կոփեալ և յղկեալ զե-
րեսս վիմին․ և 'ի վերայ քան-

դակեալ տառքն՝ եղծեալ փշրեալ. իսկ զորս մարթ էր ընթեռնուլ և օրինակել, այս և եթ է »:

Ա՛ Մ՛ Գ՛ Ե՛ Ր՛ Ձ՛ ՆԱՀԱՏ՛
ԱՐԴԱՐՈՑ

Յաղագս սրբոց Սուքիասանց վկայից ազգային պատմիչք մեր գրեն թէ, էին սոքա այր փառաւորք և պատուաւորք եկեալք յԱլանաց ընդ Սաթինկայ թագուհւոյ Արտաշէսին մերոյ երկրորդի Արշակունւոյ թագաւորի և մեծ արքային ՚ի Հայս, որոց հանդիպեալ Ոսկեանց քահանայից աշակերտեալքն ՚ի Ս. Թա-

դէոսէ Սաւքելույն, ուսեալք և մկրտեալք քրիստոնեայ, թողեալ զփափկութիւն և զփառս տանն Արքայութեան Հայոց մեծաց, չոգան ճգնեցան 'ի Ջրաբաշխ լերինն՝ յանդիման Նպատայ, և հրամանաւ արքային Ալանաց նահատակեցան անդանօր. և լեառըն այն յանուն Ս. Սուքիանոսի անուանեցաւ Սուկաւէտ, որ ըստ բարբառոյ՝ է Քէօսէ տաղ։ Իսկ զմարմինս սրբոցս ծածկեալ, գրեն, Աստուած՝ յայտնել 'ի յետին ժամանակս, առ 'ի տալ նշան մխիթարութեան ազգիս Հայոց։ Իսկ թէ զի՞նչ իցեն նըշանն ժամանակին և յայտնութեանն, գիտեն որք զօրաւորութիւնն վերծանել գիտենն։

Ցանկ յիշատակաց Սրբոց ՚ի Վանս
Սուրբ Կարապետին Մշոյ ։

14 հատ Ս. Աւետարան, արտաքոյ գրատանց, գտանին ՚ի սուրբ տաճարին. արծաթեայ պատեալ, և ոսկեզօծ. յորոց երեքն ընտիր մագաղաթեայ և բոլորագիր, և միւն յերից անտի գրեալ մատամբ արքային Հեթմոյ ։

6 » Ս. Աւետարան և ս՝ մաշեալ ։

5 » Անալօճիայ ։

1 » Անտառք նորագոյն մըտածմանց ։

2 » Աստուածաբանութիւն Դիոնէսիոսի (Արիսպագացւոյ) ։

1 » Աստուածաբանութիւն Յովհաննու Դամասկացւոյ ։

1 » Աստուածաբանութիւն Գրիգորի ։

1 » Աստուածաբանութիւն բարոյական, Անտօնի ։

1 » Աստուածաբանութիւն Ուղ և ծուծ (անուանեալ) ։

1 » Աղբիւր բացեալ ։

1 » Աստուածաբանութիւն Հարքէրդի ։

1 » Ատենախօսութիւն Ներսէսի Լամբրոնացւոյ ։

1 » Աստուածաբանութիւն հաւաքածոյ ։

1 » Բացայայտութիւն կարգաց և արարողութեանց սուրբ եկեղեցւոյ Հայոց ։

2 » Բուն տումար Հայոց ։

1 » Գովասանութիւն, 'ի Նազարէթէ ։

1 » Գանձ Յօթն խորհրդոց եկեղեցւոյ ։

2 » Գիրք վեցօրէից ։

1 » Գրիգոր Նիւսացի ։

1 » Գիրք սահմանաց Դաւթի փիլիսոփայի Հայոց, մագաղաթ ։

1 » Գրիգոր Տաթեւացի, Հարցմանց ։

1 » Գրիգոր Տաթեւացի, Ձմերան հատոր ։

1 » Ճառնագիրք ։

1 » Ճառնակարգութիւն ։

1 » Խոստովանութեանց գիրք ։

2 » Խրատք սուրբ Հարց ,

1 » Խրատ և վարք նախնի իմաստասիրաց ։

1 » Կանոնք և գործք Նիկե- ասի և Քաղկեդոնի ժողովոց . մեծադիր և ընդարձակ ։

3 » Կտակ չարչարանաց Յի- սուսի Քրիստոսի ։

1 » Կանոնգիրք Հայրապետ- աց ։

3 » Կիւրակէից ։

1 » Համաձայնաբանութիւն ։

1 » Հարցմունք և պատաս- խանիք ժողովոյն Լոնտ- րայի ։

1 » Հաւատամքն մեկնու- թեան Նիկէիւ (մար-

գարէի գրոց)։

2 » Հարցմանց գիրք Տաթեւացւոյ։

1 » Հարանց վարք։

1 » Համառօտ հաւաքումն զօրութեանց հոգւոյն։

1 » Հայելի ազդեցութեան։

1 » Ճառընտիր մեծ։

1 » Ճառք Ոսկերերանի։

1 » Մասն Աստուածաշնչի։

7 » Մաշտոց, մեծ և փոքր։

1 » Մեկնութիւն Երգ ոց երգոյն, Վարդանայ։

1 » Մեկնութիւն Երգ ոց երգոյն, Նարեկացւոյ։

2 » Մեկնութիւն Աւետարանին Մատթէոսի։

2 » Մեկնութիւն Սաղմոսաց, Լամբրոնացւոյն։

1 » Մեկնութիւն Սաղմոսաց

եւս՝ Լամբրոնացւոյն, մեծադիր ։

1 » Մեկնութիւն չորս գըլխաւոր մարգարէից ։

1 » Մեկնութիւն Գրիգորի Տաթեւացւոյ ։

1 » Մեկնութիւն Սահմանացն Դաւթի ։

1 » Մեկնութիւն Եսայեայ մարգարէի ։

1 » Մեկնութիւն Ղուկասու Աւետարանի, յիգնատիոսէ ։

1 » Մեկնութիւն Եսայեայ մարգարէի . ժողովեալ մասն առ մասն ։

1 » Մեկնութիւն Թղթոցն Պօղոսի ։

1 » Մեկնութիւն յայտնութեան Յովհաննու ։

1 » Մեկնութիւն բանից Յօ-
հաննու մարգարէի :

1 » Մեկնութիւն ժամեր-
գութեան, Խոսրով
Անձեւացի :

1 » Մեկնութիւն Եզեկիէլի :

1 » » Դանիէլի :

1 » » Միքիայ :

1 » » Սաղմոսաց,
Վարդանայ :

1 » Մեկնութիւն գործոց
Առաքելոց :

1 » Մեկնութիւն կարգաց
եկեղեցւոյ :

2 » Մեկնութիւն ԺԲ. մար-
գարէից :

1 » Մեկնութիւն ողբոցն Ե-
րեմիայի :

2 » Մեկնութիւն Աստուա-
ծաշնչի :

1 » Միքայէլ Ասորի ։
1 » Շարական, խազերով. մագաղաթ ։
1 » Ողբք Եդեսիոյ ։
1 » Ոտանաւորք, և վարք կուսանաց ։
3 » Պատմութիւն Յօհաննու կաթողիկոսի ։
1 » Պօղոս Տարօնեցի ։
1 » Պատմութիւն Սիւնեաց և վրաց ։
1 » Պատմութիւն Ս. Գրոց համառօտ, հարցմամբ ։
1 » Քամ՝ արուեստագիրք ։
1 » Սիրաք. և այլ խրատք.
1 » Սարգիս Շնորհալի, մեկն. կաթուղիկեայց թղթոց, խիստ մեծադիր ։
1 » Վիճաբանութեան գիրք,

Դաւթի և Մովսէսի
խորենացւոյ ընդ քաղ-
կեդոնս ։

1 » Վեցհազարեայ ։

1 » Տաղերգութիւն ։

1 » Փիլիսոփայութեան գիրք ։

1 » Քարոզգիրք Առաքել Վ. ի
Սիւնեաց ։

1 » Քարոզգիրք Գէորգ
Զատրքարեցի ։

2 » Քարոզգիրք Տաթեւա-
ցւոյ ։

1 » Քարոզգիրք Սիմէօն կա-
թողիկոսի ։

1 » Քարոզգիրք, անձանօք,
հանդերձ աշխարհա-
գրական ծանօթու-
թեամբ ։

1 » Քարոզգիրք Պետրոս Վ.
ին ։

1 » Քարոզգիրք Փռանգ վ.
ին։

1 » Քարոզգիրք և մեկնու-
թեան գիրք, Գրիգո-
րի Տաթեւացւոյ։

1 » Քարոզգիրք Յակոբ Պատ-
րիարքի։

1 » Քարոզգիրք, անձանօթ,
հանդերձ մեկնու-
թեամբ պատարագի։

1 » Քարոզգիրք, անձանօթ։

1 » Քարոզգիրք ՚ի սրբոց
վարդապետաց բանից
հաւաքեալ։

# ՔԷՇԷ ՊՕԼԷ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԺԱՄԱՆԱԿԻ

Յառաջագոյն քան զտիրելն Օսմանեան հզօր կայսերութեանն զաւառաւսն մեծին Հայաստանի արեւելեան եւ հարաւային կողմանց, կին ինքնագլուխ պետք եւ բռնակալք բազումք յազգէն Մարաց՝ Ամիր կամ Աղա անուանակոչեալ ՚ի կողմանս կողմանս երկրին. բազմագոյն եւս կին ՚ի հարաւ կոյս միջնաշխարհին ՚ի մասին Տարուբերանի եւ Աղձնեաց։ Եւ չառ քան զԱմիրայս

և Աղայս՝ էին չեխք · և սոցա՝ իբրև դենպետաց՝ հզօրագոյն եւս էր ազդեցութիւն 'ի վերայ բնակչաց · որք միաբան կամ առանձինն տիրէին գաւառաց գաւառաց , գիւղօրէից , աւանաց և շինից , միանգամայն և որոց բնակէին 'ի նոսին ։

Հարստութիւն երկրին և տիրապետութիւն բաժին էր նոցա · որք ոչ գիտէին զոք թագաւոր կամ աւագ քան զինքեանս · կամք և հաճոյք նոցին ունէին զտեղի օրինաց վարչութեան ։ Եւ քանզի բնակեալքն ընդ բռնակալութեամբ սոցա էին մեծաւ մասամբ քրիստոնեայ Հայք , որք զամենայն լկանս և զրկանս յօժարութեամբ յանձն առնուին՝ միայն զի պահպանեսցեն զեկե-

զեցին և զխաչ, զհաւատ և զա-
նուն իւրեանց քրիստոնեայ.
վասն այսորիկ և որք տիրէինն
նոցա՝ հանապազօր տուրս, տոյ-
ժըս, ընծայս և պահանջս առ-
նուին. յաստուածուստ իմն սահ-
մանեա՛լ ինքեանց իշխանութեան՝ առ-
նել զայս ամենայն. և եթէ ու-
րեք լինէր որ մեծատուն 'ի հունձս
և 'ի հօտս, մերկացուցեալ հա-
նէին մերկ 'ի ստացուածոց. և
բաղում այն էր զի յարեւէ հա-
տանէին, 'ի հող երկրին հեղեալ
զարիւն, ջնջէին զյետոին ճետն
անգամ 'ի տանէն և 'ի տոհմէն.
մեղս համարելով տեսանել ըզ
քրիստոնեայ՝ յազգ, զգեցեալ,
ունեւոր, և զոյգն ինչ համբաւ
առեալ 'ի գեղջն կամ 'ի գաւա-
ռին: Յորքին խորամանկութեանց

պէտք էին ուրուք առ 'ի զմիտս և զկամս հաճել պետականացն, որ ապրեցի յեկեալ հասեալ հանապազորդ վտանգէն կենաց. և եթէ դէպ մինէր յաջողել ումեք, տալով տայր աւրողին ոչ միայն զոր ինչ նայն կամէր, այլ զամենայն զոր ինչ ինքն ունէր. և միանգամայն կամակատար և անձնանուէր պարտէր գոլ 'ի ճահս և յանճահս, և տարրող ամենայն հրամանաց և նախատանաց յաղագս ընդդէմ պատուոյ անձին և քրիստոնէական կրօնին:

Սակաւ էր 'ի տիրաջան որ յուշածէր զմեծամեծ ծառայութիւնս, զհաւատարմութեան, մինչև 'ի դէպ եկեալ երբեմն զանձինս իւկ եղելոցն 'ի վերայ նոցա, փրկանաւ որդւոց զտէրն իւրեանց

'ի սրոյ, 'ի հրոյ և յայլ այսօրինակ կենսական վտանգէ, զհպատակելոցն իւրեանց անձամբ յիշել և խնայել 'ի հարստահարութենէ և 'ի չարեաց պատուհասից զանձն և զտուն իւրոյ ռայային ։

Մեծ ևս քան զայետուն արքանեակք և գործակալք և սուկական ծառայք Նոցին հասուցանէին չարիս, և կողոպտէին կեղեքէին զերկելխան, 'ի յայտնիս և 'ի գաղտնիս ։

Քանզի սոքա գոլով զօրականք թռնակալաց, համարէին զանձինս ազատս յաշխատութեանց. և բաժինք և հարք թոշակաց նոցա՝ տուեալ լինէր ըստ արժանեացն և ըստ հանգոյից. մեծամեծաց նոցին, երկոտասն, քսան, երեսուն, քառասուն, և եւս ա-

տաւել կամ նուազ , որք պար-
տաւոր էին հատուցանել զամե-
նայն պէտս նոցին և ընտանեաց
նոցին տարեկլիս , զազանելին ,
զկերլլին , և զոր ինչ և զորչափ և
կամէինն : Ըստ այսմ բաժանեալ
էին ամենայն տունք և գիւղք
հպատակաց 'ի զօրականս զօրա-
կանս , 'ի զօրապետս զօրապե-
տըս , և 'ի պետս պետս յամի-
րայից , յաղայից և 'ի շեխից` բռ-
նակալաց :

Տեարք և առողք բաժնիցս ա-
նուանէին խաքէք · որոց հետոք ե-
րեւին և ձեան խսկ ցայսօր 'ի
բնակիչս Սասնոյ և Խոյթայ` որ 'ի
Մուշ · և Խիզանու , Մոկաց և Շա-
տախու և 'ի գիւղորայսն Վանայ ,
որք զխափիրութեան տուրս տան
տերանց` 'ի Քրդաց : Գիտեմ և

դվանորայս Ս. Աղբերիկ, Մատին Առաքեալ որ 'ի Մուշ, գուցէ իցեն և այլք, որք ցայսօր ժամանակի խաֆիրաց տուրս տան, և Օսմանեան կառավարութեան տասանորդս ։

Ի շինել, 'ի քանդել, 'ի բրել, 'ի մշակել, 'ի հնձել, 'ի պատրաստել, 'ի կերակրել, և յայլ ամենայն պէտս ծառայութեանց ծառայել ծառայէին վիճակեալքըն խաֆիրաց և մեծամեծացն նոցին ։ Տիրողացն էին արտք, անդաստանք, այգիք, մարգագետինք, և ամենայն երկիր ։ Այսպիսեաց հետք և մնացորդք են բէգք Զարսանջախին, Քեղուայ, Սասնոյ, Խիզանու, Մոգաց և Շատախու գաւառաց, որք ցաւուրս ցայսօրիկ տիրա-

ցեալ ունին սեպհականեալ հնա-
քեանց զհոգւոյին կալուածս ; որք
այնքան կնճիռն յարուցին և յա-
րուցանեն ընդդէմ արդար օրի-
նաց Օսմանեան կառավարու-
թեան՝ չտալով թոյլ Յունաց առ-
նել քրիստոնէից այնոցիկ զաւա-
ռաց բնակողացն ։

Իսկ թէ զի՞նչ ինչ չարիս հա-
սուցեալ իցեն դիրք և կիրք սոյն
բռնակալաց և հետեւողաց սոցին
յաւուրս անցելոցն՝ 'ի գլուխ
քրիստոնէից կամ ոչ—մահմէտա-
կանացն համօրէն, թողում իմա-
նալ վերծանողացն . շատ է զնո-
ցին զարդի վարս և արարս դի-
տողացն չափել ընդ հնոյն . որք
քան ամենայնի հակառակ աստո-
ւածային և մարդկային օրինաց
և անձին խղճմտանաց , քանզի և

այսորեն ընդ ոտիւք զիրաւունս և զարեւ քրիստոնեայ ժողովրդեան՝ 'ի շուք նոցին ծուարելոց. այն ինչ օրէնք Օսմանեան կառավարութեան զխտիր դաւանութեան անտես արարեալ ազգաց և անձանց, ուրոյն ուրոյն իրաւանց պաշտպանութիւն և խնամակալութիւնս 'ի գործ արկանէ ։

Հերիք չէին այսքան դառնութիւնք ժողովրդեան, այլ և դէպ լինէր զի հաճարակէին այս Ամիրայն ընդ այլում Ամիրայի, այս Տիրող ընդ միւսում Տիրողի, և յարուցեալ 'ի միմեանց վերայ, աւարէին պետ իւրաքանչիւր զիւրաքանչիւր ռայայս. և արտաքուստ եկեալ այլ ոք բռնաւոր յաղթահարել զնոյն դաւառէ

բռնաւորն, ապստամբէին, դերեվարս առնուին, և 'ի պատանդ կամ· 'ի փոխարէն հաշտութեան մատուցանէին միմեանց զայսքան քրիստոնեայ որդս, կամ երիտասարդս, և աղջկունս, մինչեւ տալ և հռոգս և օժիտս իրերաց զմարդիկ իբրեւ զոչխար, զէշն, զեզն, կամ զդրամ և զայլ ինչ ստացուածս ։

Ո՞ր ։ կարէր տոկալ և կեալ այսքան ւեացս աղէտից և զրկանաց · երկիր՝ ուստի բարձեալ էին իսպառ գութ և խնամք · երկիր՝ յոր բնակեալքն ոչ ճանաչէին երբէք զնշանակութիւն բառին իրաւանց · ոչ սեպհականութեանց ապահովութիւն, ոչ անդորր. շնչելոյ, ոչ ժամ ննջելոյ, և ոչ որ ինչ նշանակէր նո-

ցա դող մարդ կենդանի ։

Յաղումք՝ Թողեալ զորս կար-
ծէինն իւրեանց, փախստեայ ընդ
դաղտս ցրուէին յո՛ և հասա-
նէին . չատ եւս այն էր զի Թող-
եալ զկանանին և զմանկաին մի-
անգամայն ընդ առ և ապուր
իւրեանց 'ի ձեռս բռնաւորացն,
ինքեանք խուսէին աստ և անդ
դաղտական անձնապուրծ . և
միացելոցն բազմաց զգլուխս կո-
րուսեալ և բազմաց զհոգիս,
այսօրինակ ամայացեալ եղեն
վայրք բազմահայք . և քանզի
արհեստագործք և երկրագործք
ամենայն 'ի Հայոց էին, անկան
մինչեւ ցայսօր ընդ անկումն Հա-
յոց և գործք ձեռաց մարդկան
յայն ամենայն գաւառս ։

Իսկ ոմանք իբրեւ ճիւս ող-

հուղայ, կամ սէգ ընդ հողով ծածկեալ թաղուցեալ այրեալ կայցին ուր և կէին. և սերունդք նոցա մարտիրոսաբար տանելով ամենայնի 'ի վերայ եկեղեցին, չարունակեն մինչեւ ցայսօր զհայութիւն և զքրիստոնէական կրօնըն, զօրացեալ և աճեցեալ որ ըստ օրէ ընդ խնամովք Օսմանեան կառավարութեան: —

Ընդարձակագոյն, բայց և կարի կարեւորագոյն լինէր տալ ստատանօր ծանօթութիւն զտեղեաց և զբնակչաց այնց կողմանց զորոց է մեր բան. սակայն քանզի պակասին ինձ լիակատար տեղեկութիւնք զայնցանէ, լռել հարկիմ: Կամիմ սակայն զոյգն ինչ գրել յաղագս Եգիպտի անուանեալ ցեղին, որոց բարբառ

մարական է, և խօսքն դքրդե-
րէն. այլ կրօնն և սովորութիւն հե-
ռի յոյժ է 'ի նոցունց, և առանձին
իմն ունին ինքեանց զոր ունինն.
պաշտեն զպաշտօն ինչ, աղօթեն
դարձուցեալ զդէմսն հանդէպ
արեւուն՝ 'ի ծագման, այլ ոչ
ունին տեղի աղօթից յատկա-
ցեալ վայր, և ոչ հարկ և ոչ
պարտք է նոցա աղօթելոյ վասն.
չունին կրօնական պաշտօնեայ,
ոչ գիր, ոչ թլփատութիւն, ոչ
մկրտութիւն, և ոչ ինչ արարո-
ղութիւն. միայն 'ի ժամ թաղ-
ման մեռելոց դնեն դաշոյն և
օճառ ընդ մեռեալն 'ի գերեզ-
մանի, և մի ոք յերկրպագունիցն
երթայ խօսել զունկանէ մեռե-
լոյն, և ձեռս տարածեալ միա-
բան աղօթեն 'ի սրտէ անձայն

զոր ինչ և աղօթենն ։ Զայրանան 'ի լսել զհայհոյել և զանիծանելն ումեք զաստուծոյ ։ Ըմպեն գինի ։ Ուտել համակիր թուին Հայոց քան Քրդաց և Տաճկաց ։ Քաջ են վարժ են 'ի ձի, 'ի զէն, 'ի կռիւ ։ Պայծառս զգենուն ։ Ազգս այս սփռեալ կայ 'ի յԱյրարատ, 'ի Վասպուրական, 'ի Տարօնբերան և յԱղձնիս ։ Զայսքան վասն այն յիշատակեցի, քանզի 'ի յետադայ պատմութեանս անսանելին գործք և սեձինք նշանաւորք յանուն Եզիդաց ։

Զունէր սրտահեռութիւն շրջել, մանրամասն հարցանել և 'ի գիր արձանագրուցանել որպէս յաղագս Եզիդաց, նոյնպէս և յաղագս Ասորւոց որք բնակին ցիր և ցան 'ի լերինս, 'ի ձորս, և 'ի

դաշտս 'ի նոյն նահանգս, որք 'ի տեղիս տեղիս խառն են ընդ Հայս, և բազում ուրեք առանձին գիւղորայս և բնակութեան վայրս կալեալ ազգին. զմի և զնոյն հանդիպումն հանդիպեալ նոցա որպէս և բնակչացն Հայոց։

Եթէ բաց մարդոյ չրջել 'ի քունջս և յանկիւնս Հայաստան աշխարհի, ոչ միայն երեւք և կտորք հին յիշատակարանաց և պատառք մագաղաթեայ պատմագրութեանց գան 'ի յայտ նմին, այլ մատուցեալ առ ծերունին, զոր տեսանէ յեցեալ 'ի սնարս քարին կամ դարին, թիկնեալ կողնուոյն հինաւուրց, կամ բոդացեալ ուռենւոյն և դօսացեալ եղեւնւոյն, յորոյ յանոտից անե

ցանէ վտանգն մշտաջնոս ; և ա-լեւորն ղալեաց մօրուացն կա-լեալ՝ յալիս առուսին. յառնեալ նայի, յուշ և 'ի կշիռ ածեալ զանցեալ և զեկեալ աւուրս, և մերթ ընդ մերթ մրմնջէ. « փո՛ւչ աշխարհ, բո՛շ դուռնեա, սո՛ւտ աստղուոր : Շուքր եմ քենէ Աստուա՛ծ, փառք քեզ Աստ-ուած . . . ». :

Մատիր, համբուրեաց, ող-ջունեա, Նիստ առընթեր, հարց, և պատմեսցէ քեզ զոր ինչն լը-ւեալ և տեսեալն իցէ :

Այսպիսւոյ իմն պատահեալ Տրապիզոնցի Պօղոս պատուելին Թօվմայեանց, բանասէր և հայ-րենասէր բարեկամն իմ, 'ի 1832 ամին փրկչական, 'ի վանս Ս. Ա-ռաքելոց որ 'ի Մուշ, ծերունի

Սիմէօնի վարդապետին, որ 'ի ցե-
ղէն և 'ի գեղջէն Քաջարանց Սաս-
նոյ. յորմէ լուեալ զպատմութիւն
Տէր Պօղոսին, կամ ըստ ասորա-
կան և մարական կոչման Փէշէ
Պօլէին, գրեալ ունէր, բազմիցս
և ս յայլոց ժամանակակից ծերոց
տուեալ պատմել զնոյն։

Խնդրեցի, և ետ ինձ զօրինակ
գրածին. այլ քանզի աշխարհա-
բառ և իբրև ստուերագիր էր
գրեալն, սակաւ ինչ աշխատու-
թիւն յանձն առի յոճ պարզ գրա-
բառ հարկանել, դասաւորել, և
յայսմ մատենիկս կցորդել 'ի տիպ,
շնորհակալութիւն յոյժ ձօնելով
բարեկամին յիշելոյ։

Պատմածս այս՝ մասն կամ
մանրանկար իմն է աւուրցն և
տարեացն 'ի վեր անդր նկարա-

գթեւլոցն ճոխութեանց ։ Ո՛չ բանից և սովորութիւնք պատմագրեալք 'ի սմա , են նոյնպէս պատմողին . միայն զհանդերձ գրաբառ արկաք 'ի վերայ , քանզի յոռի և ճապաղ էր նախատիպն ։

---

# ԲԷՇԷ ՊՕԼԷ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄԱՐՏԻ

Երբ առ 1820 ամին Թուականի փրկչին մերոյ , նստէր մերձ 'ի Բաղէշ՝ յաւանին Ոսիլ Դրան՝ Մար ոմն Տավրիշ—Նարի անուն . զորոյ համբաւ և ազդեցութիւն մեծահռչակ հարկանէր շուրջ

զամենայն գաւառօքն Հայաստանի և Քիւրդիստանի · և Ոմիլ Ղրան էր իբրեւ կեդրոն տեղի Մարական, համ ուղիղ եւս ասել, Կորդուական բռնակալութեանց։ Այն Նաբի իբրեւ դենպետ և իբրեւ պետաց պետ իշխէր 'ի վերայ մտաց և բազկաց միանգամայն ամենայն մեծամեծաց և բռնակալացն այնոցիկ որք չուրջ զիւրեւն էին · խորհուրդ և հրաման հանէր առ նոսա · և զոր ինչ քակէր քակէր , զոր ինչ շինէր շինէր ։

Քօղ արհեալ զգլխովն՝ այնպէս ելանէր շրջել 'ի գիւղօրայս յաւանս , և 'ի շէնս , անտեսանելի պահելով զերեսս իւր յաչաց քրիստոնէից անհաւատից, և 'ի մերձաւորաց մահմետականաց՝

անարժան անձանց ։ Ո՛ւր և հաստանէին ոտք գնացից նորին , ամբոխ յոյժ խռնեալ կուտեալ զկնի ընթանային տեսանել զհետըս նորին , մերձենալ համբուրել երկիւղիւ մեծաւ զձեռս , զոտս և զգլուխս հանդերձից նորին , կամ լիզուլ զփոշին գարշապարաց , և ըմպել և լուանալ 'ի ջրոցն լուանալեացն նորին ։ Քարոզէր սա զհաւատամս ընդդէմ ոչ—միահամէտականաց · և յայս լնոյր զլուխ բանից և ուսման նորա , Թէ կա՛մ պարտ է զամենայն մարդիկ 'ի մեր կրօնս դարձի բերել , կա՛մ զամենեսեան 'ի ներքոյ արեգական կորուսանել ։

Նա քանզի իբրև զաստուած ունէին զբան նորա ամենեքեան

որ լսէին նմա, ձեռնհասուն եղեն նորա համօրէն բանակաւք մերձակայք. և խորհուրդ 'ի գործ արկին դհաւատոց հրոսակի արշաւանս և ասպատակս կազմել արձակել 'ի վերայ ոչ—Մահմէտականաց. և զունդս այս հրոսակաց լինէին առնուլ բազմաթիւ և արիագոյն աշակերտեալք Նոբինի. և 'ի դասուց զօրականաց բանաւորաց հազարաւորաց, ամենեքեան 'ի սուր, 'ի վէն, և 'ի հաւատոս յօգափառեալ, ընդ հեծեալս և հետևակս արք իբրև երեսուն և վեց հազարք հանդերձ առուանի զօրօք Ամիրային Թօհմաննաւ՝ Միր Մէհէմմէտ մեծ իշխանին, որ աւագագոյնն էր քան զամենայն բանակալսն.

Ցայնժ ժամանակի Նոտէր 'ի

Աղերդ և 'ի Ռուբինեան իշխան
ութն Նդրդի՝ Միրզըք անուն, ան-
կախ յիշխանաց Մարացն՝ և 'ի
չեխեցն, որ մարդասիրաբար
խնամէր յանձանձէր զամենայն
Հայս, զԱսորիս և զՅզիդիս որք
ընդ իւրեւն էին. Միրզըք արի
էր և 'ի կամս բարի. վասն այ-
սորիկ բազումք փախուցեալ յան-
տանելի լծոց այլոց բռնակալաց,
դային յապաստան յերկիրն Միր-
զըքու, յանդորրու կային և ա-
զատ զիւրաքանչիւր կրօնս պաշ-
տէին. որովք բազմացեալ և ամ-
րացեալ լինէր բնակութիւն գա-
ւառացն, 'ի սփոփանս պատըս-
պարելոցն և 'ի փոխ շրջակայիցն
տիրողաց:

Խորհուրդ 'ի մէջ առեալ Նա-
բէին և իւրքն, հրաման հանէին

զառաջինն յարձակիլ 'ի Սղերդ-քաղաք և 'ի Բղընդուան աւանն, կոտորել նախ զանդր եղեալսն, բեկանել նուաճել զՄիրզըքին զօրութիւն, զի այնու հետեւ դիւրին լիցի տիրել այլոց ամենեցուն. ահ արկեալ և երթ նոցա, ասէ, անձնատուր գան կա՛մ 'ի հաւատս մեր կա՛մ 'ի մահ անձանց ։

Իբրեւ զգեստս զայրացեալս յաւուրս դարնայնոյ, այնպէս հորդան տուեալ մարտական բանակին՝ յառաջէին աւարառութեամբ, հրձգութեամբ և սպանութեամբ. զոր տեսեալ Միրզըքն և մեծամեծք Հայոց և Եզիդացն՝ ժողովեցան միաբանեցին հնարս հայթայթել ընդդէմ տանուլ ահագին և անխուսա-

վնեղի վտանգին կորստական ։

Եւ իբրեւ զարհուրեալք, ամօչեալք, տարակուսեալք լինէին և զինչ առնելն զանգիտանային, աչք ամենեցուն դարձան հայել յաւագ երէց քահանայն Հայոց 'ի Տէր Պօղոս, որ 'ի բանս, յինչս և յարութիւնս նշանաւոր էր 'ի գաւառին, և խորհրդականն, օգնական և սիրելի յոյժ յաչս Միրզըբին · զսա անուանէին քրդախօս Հայք և Եզիդիք՝ Քէշէ Պօլէ ։ Սա յառաջ մատուցեալ անցեալ կացեալ 'ի սարսափադու ատենին, բանայր և ցուցանէր նոցա, ասելով, Թէ Չէ այս կռիւ սովորական վասն մարմնաւոր փառաց և իշխանութեան կամ վրիժու, այլ ընդ ազատութեան անձանց դառն և զհաւատս

մեր բառնալ հանել 'ի մէնջ. և քանզի եթէ խոյս տամք՝ սատակիմք, եթէ դղիմի հարկանիմք՝ մեռանիմք, բայց և մեռուցանեմք, և զանուն քաջութեան անձանց ժառանգեմք. հապա անյապաղ, արիք՝ ընդդէմ, 'ի ճակատ, և կանայք և մանկտին մեր քաջալերօ կարդասցեն մեզ, և 'ի մէնջ ուսցին զօրինակ քաջութեան ապրելոյ յաղթելոյ, կամ կռուելոյ և մեռանելոյ։

Ահա ես ընդ առաջ ձեր ամենեցուն։

Շարժեալ և ոգի առեալ 'ի բանիցն տէր Պօղոսին՝ Միրզըք և ամենայն մեծամեծք ատենին, միաբանեալ վստահ յայրն բազմայաղթ, զորոյ կորովութեան զփորձ բազմիցս առեալ էին կամ-

խաւ. ոստեաւ այր իւրաքանչիւր ՚ի տեղւոջին սթափեալ յերկիւղին, զէն բարձեալ կազմեցան կայլին ։

Զայն եւ տէր Պօղոսն Հայոց՝ և Միրզըք Եզիտաց, գումարեցան վաղվաղակի ոգիք իբրու տասն հազար. քարոզ եւ կարդալ Միրզըք ՚ի պահս և յաղօթս կալ, զԱստուած ՚ի թիկունս կոչել, և բազմաց կարօտելոց հրամայէր ողորմութիւնս բաշխել յընչից իւրոց և ստացուածոց. զնոյն օրինակ առնէին որք ունէաքն էին ։ Նաև ՚ի վերայ Աստուածային յուսոյն՝ դիմէր և ՚ի հնարս և գուշակողս, որք նշան յաղթողութեան ցուցանէին նմա ։ Խորախոյս տուեալ այնուհետեւ սակաւաձեան իւրոյ բանակին՝ յա-

ռաջ խաղայր առ Սղերդ քաղաքաւն, բաժանեալ զզօրսն յերկուս, 'ի Հայս և յԵզիդիս. զօրագլուխ Հայոց կարգէր Տէր Պօղոս, և Եզիդեաց ինքն Միրզբէք: Հայք առ հասարակ հետեւակք էին, հրացանակիրք, սուսերակիրք և ասպարաւորք. իսկ Եզիդիք մեծաւ մասամբ հեծեալք և տիգաւորք:

Անդ առ տեղեաւն 'ի պատահել ճակատուց յերկոցունց կողմանց հակառակորդաց, դարձան Միրզբէք և Տէր Պօղոսն առ իւրաքանչիւր գունդս իւրեանց և ասեն. — Կազմ կացէք, և զհետ մեր դիտեցէք. ահա մեք երկաքանչիւրքս արշաւեմք 'ի մէջ մարտին թշնամեաց. եթէ ետ մեզ Աստուած յաղթութիւն,

զառնանալք ոչ յետս առ ձեզ՝ ածեալ նշան յաղթութեան ՚ի քաջալերութիւն. իսկ եթէ անկանիցիք մեռեալ, յայնժամ դուք ամենեքեան միահամուռ յարձակեալ ցուցէք զտիրասիրութիւն ձեր, զազատասիրութիւն, յանձն առեալ զմահ արիաբար. այլ ՚ի մահուն ձեր միոյ միոյ ուրուք ՚ի ձէնջ փոխանակ՝ հազարս ՚ի նոցանէ արկէք տապաստ, և այնպէս կնքեցէք զձեր վախճան և զմեր վրէժ: Եւ զայս ասացեալ ողջունեցին զզօրն, և նոքա ՚ի լալիւն և յարտօսր հատեալ թողուին նոցա գնալ.

Ցայնմ վայրի վաղվաղակի ընթացան խոյացան իբրև զառիւծ ՚ի յորս և իբրև զարծուի արագաթռիչ, Միրաքէն և Տէր

Պօղոսն , յարձակեցան , հասին , և անկան 'ի մէջ Մարաց զօրուն , զօրէն կրակի խանձողելոյ յեղեգունս , և իբրև զամպրոպ փոթորկեալ ընդ այլ և ընդ ահեակ հարկանէին , լափէին , թաւալէին , նիզակաքաղս արարեալ զստուարութիւն բանակին , և զընտիր ընտիրս սատակէին . և զերկուց ականաւորաց քաջաց զգլուխս կտրեալ ցից 'ի նիզակ առեալ ածէին 'ի բանակն իւրեանց . անդէն աղաղակ ցնծութեան հնչէր 'ի զօրուն , և այր իւրաքանչիւր վառէր վազէր ի յուսով յաղթութեան՝ հարկանել զԹշնամին , որ եռացեալ ատելութեամբ և բորբոքեալ վրէժխնդրութեամբ յարձակէր, գայր 'ի վերայ :

Ի խռնել յերկոցունց կողմանց և յարձակմանէ այնքաննեաց հրազինուց մթանայր լոյս արեւուն , և 'ի սաստիկ բաղխմանէ սրոց և տիգաց անգթաբար զօրէն մայրեւորաց զմիմեանս կոտորելոց , ձայնք ահեղ հնչէին իբրեւ զձայն գոչելոյ որոտման ամպոց և կոհակաց ջուրց ծովուն մրրկելոյ ։

Քամք ձիգ անցանէին , այլ ոչ յաղթութեան և ոչ պարտութեան երեւէր կողմն . քանզի քաջութիւն միոյ կողման , և թանձրութիւն միւսոյն զուգակշիռ պահէին զվիճակ ։

Յայսմ տագնապալիր վայրկենին , զօրապետ զօրուն Բօհտանու Միր Մէհէմմէտ ամիրային , այր հուժկու , և յաջողա-

ձեռն , 'ի նժոյգ ընտիր աշտանակեալ , սպառազէն և նիզակաւոր , որ զգեցեալն էր զրահ երկաթի յանձն իւր , յառաջ խաղայր , վարէր , սաստկէր զքաջումս յեռուստ 'ի գնդէն Հայոց , և հասանէր մօտ ուր Միրզըքն էր . և ինքն զերծ մնայր 'ի հարուածոցն տեղացելոց , ամրափակեալ գոլով զրահիւք :

Դարձաւ Տէր Պօղոս և ետես զՄարն այնքան յաջողեալ և յառաջեալ , վազ տայր անդէն հասանէր առ նա , և յեռուստ կուսէ 'ի սեաւ քուռակէն յոր հեծեալն էր , ոստնոյր արագակխրթ 'ի գաւակ ձիոյն զօրապետին Մարաց , և միով բազկաւ գրկափակեալ պրկեալ զձեռսն զերկոսին 'ի կուրծս նորին , միւսով

ձեռամբն հանէր դաշոյն 'ի գօտւ-ւոյն և կոխեալ 'ի ծոծրակ առն, հեղոյր զարիւնն. փողոտէր եւ ընդ եւ և 'ի վայր հոսէր յերի-վարէն, և ինքն ածեալ զնիզակ սպանելոյն., աշտանակեալ 'ի բարձրավիզ ձերման նժոյգն նո-րին, իբրև զկայծակն արագա-հաս ժամանէր օգնել Միրզըքին, որ անդէն իւրով քաջութեամբ մերձենայր հասանէր յաղթանա-կել. էզարկ Տէր Պօղոսն զմիա-ցեալսն. և որք անկանն՝ անկան, և որք փախեանն՝ փախեան յե-րեսս երկրի ցիր և ցան:

Ի փախստէից մասն ինչ, յորս բազումք էին հետևակք հրա-ցանակիրք, անկեալք 'ի գոմս Աղերդցւոց լինէին ապաստան. զհետ մտեալ նոցա զօրացն Միր-

զըքու և Տէր Պօղոսին և պաշտա-
րեալ՝ կամէին ձերբակալել, իսկ
նոքա յանդգնութեամբ դէմ եղ-
եալ կռուէին ընդ նոսա. և իբրև
ոչ եղեն անձնատուր, հրամայ-
եաց Միրզըք հրով այրել զգոմ-
սըն, յորս ապաստանեալքն կեն-
դանւոյն այրեցան, և ճենճերք
նոցին հալեալ իբրև ջուր ընդ-
առուս հոսէին 'ի մերձակայ գետն,
զոր անդ կացեալքն տեսանէին:

Ցաղթականքն առին զամենայն
աւար բանակին թշնամեաց, և
դարձան 'ի տեղիս իւրեանց խըն-
դութեամբ. իսկ Մարք ապրեալ-
քըն ոչ ևս իշխեցին յիշել զխոր-
հուրդս իւրեանց զնախկին և ոչ
զվրէժ լուծանելոյ այսմ ահաղին
պարտութեան: Մեծացաւ իշ-
խանութիւն Միրզըքին. մեծա-

բեցաւ անուն Տէր Պօղոսին․ և համբաւ կենաց նորին զարհուրեցուցանէր զՄայրս՝ մինչեւ ցօր մահուան նորա ։

Յաղագս պատմողին ։

Պատմող բանիս Սիմէօն վարդապետս այս ծնեալ 'ի Քաղջարանց գիւղն Սասնոյ 'ի մեծատուն և քաղջանուն ծնողաց, և էր ինքն անձնեայ, թիկնաւէտ, հսկայակերպ, հաստոսկր, և կարի զօրեղ և սրտեայ։ Սա նախ ամուսնացեալ ծնանի դուստր մի, և 'ի մեռանել կողակցին և յամուսնացուցանելն զիւր դուստրն, քանզի էր գրոց աշակերտ, ձեռնադրի չուշտակ վարդապետ, կրօնաւորի 'ի վանորայս Աղձնեաց և Տարօնոյ երկրին․ և յաւուրս Ադրիանուպօլցի բարեյիշատակ Պօղոս Պատրիարքին գնայ և մնայ 'ի սուրբ

Երուսաղէմ զամս քանիս ։ Այլ 'ի բնականալն իւրում 'ի Ս. Աղբերիկ վանսն՝ որ առ Սասուն, յորում էր վանահայր քաջահամբաւն Գաբրիէլ վարդապետ շուշտակն, միաբանեալ ընդ սա, և երկաքանչիւրքս այսոքիկ ընդդէմ հրոսակաց և արշաւանաց Մարաց բնակելոց շուրջ առ վանիցն՝ բազում և մեծամեծ նախճիրս գործէին յաղագս պահպանելոյ ըզ վանքն 'ի թալանելոյ, գոլով միանգամայն յաջողակ 'ի տէգ և 'ի զէն, ընդ ոտն և յերիվար. 'ի ժամանակին՝ յորում տիրողն Տարուբերանոյ Մէլիմ փաշայն ամբառնայր ընդ իւրեւ ածել զՍասուն, և Սասնեայք զդէմ ունէին նմին, չկամեցեալ յանձն առնուլ հպատակել Մէլիմին ։ Ասպատակք երկոցունց կողմանցս տեւէին ամս իբր հնգետասան. և Ս. Աղբերիկ վանքն

դտանէր որպէս պորտ՝ կեդրոն Սասնոյ և Տարուբերանոյ ։

Սիմէօն վարդապետս այս յայլ և այլ կողմս եւս և 'ի վտանգս բազմիցս մուտ և ելս գործեալ և արիագոյն հանդիսացեալ էր, որպէս էր տեսանել զմարմին նորա գրեթէ բովանդակ ծաղկեալ 'ի սպիս ։ Մեռաւ Սիմէօն վարդապետ 'ի 1855 ամին 'ի խոր ծերութեան, յիւրում բնիկ գաւառին 'ի գիւղն Բացի, յոր և թաղեցաւ մօտ 'ի գեօղն Քաջարանց. ուր և կայ ցայսօր կենդանի՝ ծընեալն 'ի դստերէ նորին Տէր Մակար քահանայն ։

## ՎԵՐՋԱԲԱՆ

Զպարունակելոցն գրքոյկիս չանազանութեանց նիւթոց արժան էր տեսութիւն ինչ ընդար-

ձայն գրել, այլ Թողուլ զայն· այլում պատեհութեան, որպէս և յաղագս Գրոց Բրոցին մերոյ. քանզի 'ի մտի ունիմ չարունակել զայնօրինակ տեղագրական և զայսպիսի պատմական գործս հետզհետէ ածել 'ի լոյս, եթէ քաջալերեսցեն զիս նախանձախնդիրք և սիրողք ազգի և հայրենեաց մերոց, բարերարողք կամ գնողք գրոց, առ 'ի հատուցանել գոնէ զծախս տպագրութեանց։

Յերրորդ. ձեռնարկին իմ խոստանամ դնել և զբառս գաւառականս հանդերձ նշանակութեամբ նոցին, որքան 'ի մտի և 'ի ձեռին կայ ինձ։ Յայնժամ գոհացուցանեմ և զայնոսիկ, որք մեղադրեսցինն զիս յաղագս Գրոց Բրոցին, թէ ընդէ՞ր զ'ի նմա եղեալ գաւառական բառիցն չգրեցի զնշանակութիւնս առընթեր, կամ

զբառարան 'ի վախճանին, վա-
ոըն այսորիկ փուլթամ յայամիկ
և յայամ մատենկիս քանի ինչ
բառից տալ ծանօթութիւն, որք
չիցեն յայտնի ամենից։

Երես 31· Շուշրեմ. — որոյ
հականարձն է՝ Անշուշտ եմ։
Զայս բառ վ,անեցիք սովորաբար
'ի գործ ածեն, յորժամ զտա-
րակուսելն և զչգիտելն կամիցին
ասել. է և բառ ինչ վ,անեցւոց
այսու նշանակութեամբ գործա-
ծելի, որ է Տաշրեմ։

Երես 32· Աճեց· բառ Մշեցի
Հայոց, որ նշանակէ պապ կամ
մեծ հայր։

Երես 34· Բէծայ· բառ Արա-
րատեան Հայոց, որ նշանակէ
ծեր, ալեւոր. այսպէս յորջոր-
ջեն ոչ զայն որ իւրեանց տան
և ընտանեաց է բուն հայր, այլ
զայն՝ որ 'ի գեղջն կամ 'ի թա-
ղըն գտանի. կամ այր ալեւոր

անձանօթ , բայց պատկառելի և յարգելի ։

Երես 165 · Բողացեալ , որոյ արմատն է բող · գրի նաև բողոտ · բողացեալ անուանեն ըզ ծառ կամ զխայտ , որոյ մէջն կամ 'ի ճճեաց կերեալ կամ 'ի հնութենէ աւուրց փտեալ իցէ ։

Երես 196 · Աստառ · բառ վանեցւոց , զոր 'ի կիր արկանեն առ 'ի նշանակել երկլիր կամ երկբաւոր` հակադարձ երկնային կամ հանդերձեալ բառին ։

Բաւ է այս և եթ առ այժմ ։ Կամիմ խօսել սուղ ինչ և յաղագըս ձեռագիր մատենից նախնեաց օրինակելեաց (մանաւանդ 'ի յետին դարս) , որք գտանին աստ և անդ , զորոց ասացաք թէպէտ 'ի կարգին սակաւուք · բայց դու յորժամ կամիցիս խնդրել մատեան կամ ճառ , մի՛ շտապացիս ընթեռնուլ զմակագիր կամ

զճակատագիր նորին, քանզի սովոր են օրինակողքն 'ի միում յայնմ մատենի կցել խձել զոր ինչ և պատահեալ իցէ ինքեանց, կամ զոր առաւել ախորժեալն իցեն օրինակել դնել յայս անուն գիրսն, յորում թուղթք իցեն յաւելեալ և մնացեալ անգիր. հետազօտողացն մնայ զբովան-դակ կինչ և իցէ ձեռագիրն քաղել մի, և ահա յանկարծ հանդիպի նմա խնդրելին իւր, մերթ եւս՝ քան զխնդրելին առաւել պատուական։

Ազգային Ուսումնական և Վանորէից պատուարժան խորհուրդք իցէ թէ զուշ և զջան իւրեանց դարձուցանէին ընդ դաստիարակութեան և նիւթական բարեկարգութեանց՝ այց առնել եւս և գրենեացն, որք գտանին 'ի վանորայս և 'ի գաւառս, ժողովել գէթ զայնոսիկ և հանել 'ի

մոլւոյ և աղաւաղել 'ի մաշելոյ ․ ւեռեղել տալ յազգային ինչ թանգարանի՝ հաստատեալ յապահով վայրի ․ կա՛մ փոխականն կա՛մ զօրինական նոցա ։ Նոյնպէս և դրել տալ զստորագրութիւնս վանորէիցն, եւս և ուրաքանչիւր գաւառաց ժամանակակից և անցեալ իրաց, նշանաւոր անձանց և վայրաց զպատմութիւնն, զորս 'ի լոյս արձանացուցանել եթէ չիցէ այսօր պատեհ, ․ զան աւուրք և յաջողեն ։

Ձայս ձեռնարկ դիւրին․ևս է 'ի ձեռն բանագէտ ուսուցչաց կամ դրագէտ վանականաց 'ի գլուխ հանել ․ այսու վախճան հասանէ նաև այլ-սպէս կռուոց և յոռութեանց ամանց վանականաց, որք ծնունդք են պարապորդութեանց ․ որք և ընդ բամբասանօք ժողովրդեան և զատողաց անկեալ կան խոտիւ, և